# ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ

Երբ ամեն անգամ դպրոց եմ գնում,
Ուրախ ներս մտնում շքեղ դռներից,
Մեծ Առաջնորդի նկարն եմ տեսնում,
Որ ժպտում է միշտ դիմացի պատից:
Եվ այդ ժպտացող բարի հայացքում,
Ջինջ աչքերի մեջ՝ վեհ ու հաղթական
Իմ հայրենիքի գալիքն եմ տեսնում
Եվ իմ երջանիկ, չքնաղ ապագան:
Ահա մի պաստառ՝ կարմրագույն ու լայն
Զգված է դեմի պատի երկայնքով,
Իսկ նրա վրա խոսքեր անմահ՝
Սովորել համառ ու անհագ կամքով:
Մեծ Ստալինի խոսքերն այս վսեմ
Ինձ տալիս են ուժ, ավյուն ու կորով,
Որ միշտ աշխատեմ, համառ սովորեմ
Հաղթեմ ուսման մեջ փայլուն հինգերով:

*ՌՈԲԵՐՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*
(Երևանի № 51 դպրոցի աշակերտ)

*Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ*






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*... Արևավարդ Հայոց ազատ աշխարհում,*
*Մանուկ ու մայր, ջահել ու ծեր սիրաբար,*
*Մեծ Ստա՛լին, քո անունն իրենց սրտերում՝*
*Երգում են քեզ, փառաբանում խանդավառ...*

Նկարում. Մոսկվայի պիոներները ծաղիկներ են մատուցում Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ նրա յոթանասունամյակի օրը:






Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

1.

Աշուն էր՝ աշնան պայծառ առավոտ։

Դնեպրի վճիտ ջրերն իրենց ափերը զարդարող ծառերի ու թփերի հրապուրիչ գույներն արտացոլելով, ոսկե հալոցքի նման հոսում էին դեպի հեռուները։ Թռչուններն աշխույժ ճռվողյունով թռչկոտում էին ծառից-ծառ, թփից-թուփ։

Ջրերի վրա, ասես ծփացող ալիքների միջից, հայտնվեց մոտորային մի նավակ, հետո՝ երկրորդը, երրորդը, չորրորդը, հինգերորդը — գետային մի ամբողջ նավատորմ. բոլորն էլ լի կենսախինդ պատանիներով, որոնք ափին մոտենալուն պես իրենց զվարթ բացագանչություններով թնդացրին շրջապատը։

Նրանք բոլորն էլ Սովետական Ուկրաինայի պատանի միչուրինականների ռեսպուբլիկական հավաքի մասնակիցներն էին։ Յոթ հարյուր հիսուն պատանիների մեջ քիչ չէին նաև Մոսկվայից, Լենինգրադից, Բելոռուսիայից, Վրաստանից, Մոլդավիայից և Մերձբալթյան ռեսպուբլիկաներից ժամանած հյուրերը։ Նրանք բերել էին սեփական ձեռքով աճեցրած շատ բույսեր ու պտուղներ։

Հավաքը տեղի էր ունենում Կիևում՝ Դնեպրի գեղազարդ ափին տարածվող ագրոբիոկայանի պարտեզներում ու փորձադաշտերում։

Եվ պետք էր տեսնել, թե ի՛նչ ապրումներով էին նրանք ամբիոն բարձրանում, ինչպիսի լրջությամբ ցուցադրում իրենց փորձերին վերաբերող լուսանկարները, դծագրերը, էքսպոնատները։

Հավաքը տևելու էր սաս օր։ Ագրոբիոկայանի ղեկավարները պատանիների համար մոտորային նավակներով հետաքրքիր արշավանքներ էին կազմակերպում։

2.

Մի այդպիսի արշավանքից վերադառնալիս գետափին նրանց հանդիպեց ագրոբիոկայանի դիրեկտորն ու ժպտադեմ հաղորդեց.

— Այսօր նոր հյուրեր եք ունենալու՝ թանկագին հյուրեր։

— Որտեղի՞ց են,— հարցրին նրանք։

— Չեխոսլովակիայից։

— Չեխոսլովակիայի՞ց...— անցավ բերնե-բերան։

— Ի՞նչ, միչուրինականնե՞ր...— մեջ ընկավ մի պիոներ, որին իր պահած ծիտիկների համար ծիտիկ էին կոչում։

Դիրեկտորը ժպտաց։ Նա հայտնեց, որ Կիև է ժամանել Չեխոսլովակիայի աշխատավորների դելեգացիան և ցանկություն է հայտնել ներկա գտնվել հավաքի աշխատանքներին։

— Գուցե և մեջները միչուրինականնե՞ր կան,— ուրախացած ավելացրեց նա։— Հը՞, երեխանե՛ր, ի՞նչ հետաքրքիր բան կըստացվի...

3.

Իրոք որ, հետաքրքիր հանդիպում էր սպասվում։ Հյուրերը եկան կեսօրից հետո։ Նրանց մեջ, ճիշտ է, միչուրինականներ չըկային, բայց դրա փոխարեն կային երկու դիպլոմացական։ Նրանք հափշտակությամբ դիտում էին ցուցադրված էքսպոնատներից ամեն մեկը, զրուցում նրա հեղինակի հետ, նշումներ կատարում իրենց ծոցատետրերի մեջ, ցույց տալիս իրար, նորից շոշափում։ Մինչ այդ, նրանք շատ բան էին լսել մեր երկրի, մեր պատանիների կյանքի մասին, երազել էին գոնե մի անգամ լինել մեր երկրում։

Նրանց շուրջը ցնծում էր մեր hրջանիկ երկրի բազմալեզու պատանեկությունը։ Ռուսն ու բելոռուսը, ուկրաինացին ու վրացին, հայն ու լատիշը, լատվիացին ու էստոնացին, հրեան ու մոլդավացին իրար հետ հարազատների պես էին խոսում։ Նրանց բոլորին միացնում, իրար հետ զոդում էր սովետական ջերմ հայրենասիրությունը։ Նրանք իրար հետ զրուցում էին ռուս մեծ լեզվով։

Երբ հյուրերը մոտեցան էքսպոնատների մի նոր խմբի, Գիվին սրտի խորքում մի քաղցր դող զգաց։ Պակաս չհուզվեցին նաև Նանուլին և Գոգին, որոնք սրտատրոփ սպասում էին իրենց էքսպոնատների ցուցադրմանը։

Չեխական դելեգացիան սովորականից երկար մնաց վրացական պատանիների էքսպոնատների մոտ։ Քաղցրահամ մրգերի, ցիտրուսային և տեխնիկական բույսերի նմուշները ուղղակի աչք էին շոյում։

Հյուրերի հետաքրքրությունն ավելի ուժեղացավ, երբ նրանք իմացան, որ պատանիներից մեկը գորեցի է՝ Մեծ Ստալինի ծննդավայրից։ Սկսվեց բարեկամական աշխույժ հարց ու փորձը։ Չեխ պատանիները բարեկամներին խնդրեցին նամակագրական կապ հաստատել և ցիտրուսային սերմեր ուղարկել իրենց համար։ Նրանք տվեցին իրենց հասցեները և ջերմ շնորհակալություն հայտնեցին ցույց տված ընդունելության համար։

Հրաժեշտի պահին պատանի հյուրերից մեկն ասաց.

— Շուտով մենք կգնանք մեր երկիրը։ Եվ այնտեղ սիրով կպատմենք այն ամենը, ինչ տեսել ենք սեփական աչքով։ Իսկ մեր տեսածը կարելի է արտահայտել միայն մի բառով՝ խաղաղություն։ Մենք խաղաղ ստեղծարար աշխատանք տեսանք և՛ գործարանում, և՛ կոլտնտեսությունում, և՛ պատանիների մեջ։ Մնաք բարո՜վ, ընկերնե՜ր, մնաք բարո՜վ...

Հետո նա, գլխարկն օդում թափահարելով կրկին նայեց պատանիներին։ Գիվիին այնպես թվաց, թե պատանին հիշեցրեց ցիտրուսային և տեխնիկական բույսերի սերմեր ուղարկելու մասին։ Ոչ, նա չէր կա-



րող մոռանալ։ Նա ծոցատետրի մեջ չեխ պատանիների հասցեները գրեց մոլդավացիների հասցեների տակ, որոնք նույնպես սերմեր էին խնդրել նրանից։

4.

Թբիլիսի վերադառնալուն պես Գիվի Լոնգուրաշվիլին մտածեց խոստացած սերմերի մասին։ Նա պետք է կապվեր Աբխազիայի և Աջարիայի լավագույն ցիտրուսաբույծների հետ։ Շուտով բազմազան սերմերի տասներկու փոքրիկ ծրարներից բաղկացած մի ծանրոց ուղարկվեց Մոլդավիա, մեկն էլ՝ Չեխոսլովակիա։

Ծանրոցներն ուղարկելուց հետո Գիվին թեթևացած շունչ քաշեց, բայց դա շատ



կարճ տևեց, որովհետև նոր մտքեր պաշարեցին նրան. արդյոք տեղ հասա՞ն իր ուղարկած ծանրոցները։ Պատասխանն ուշանում էր։

Մի առավոտ փոստատարը մի նամակ բերեց։ Այդ նամակը Մոլդավիայից էր՝ Տուդորավոյի գյուղատնտեսական կայանի դիրեկտոր Վ. Սիդորենկոյից։ Նա գոհունակությամբ տեղեկացնում էր, որ ստացել են Գիվիի ուղարկած սերմերը և շնորհակալություն էր հայտնում նրա պարտաճանաչության համար։

Մի քանի օր հետո Գիվի Լոնգուրաշվիլին նոր նամակ ստացավ՝ դարձյալ Մոլդավիայից։ Այս անգամ արդեն գրում էին, թե ինչպես վրաց պատանու ուղարկած սերմերը Անդրկարպատյան մարզի դպրոցականները՝ Էմմա Գորվատը, Էրիկ Շտոլցերը, Կլարա Գուբիկը և մյուսները ոչ միայն իրենք են աճեցրել, այլև ուղարկել են Ուժգորոդի և մոտ տաս ուրիշ քաղաքների ու գյուղերի դպրոցականների, որոնք իրենց փորձնական տեղամասերում հաջողությամբ աճեցնում են դրանք։

Այդ ամենը շատ լավ էր։ Այդ ամենն ուրախացրեց պատանի միչուրինականին։ Բայց նա դարձյալ լուր չուներ իր չեխ բարեկամներից։ Մի՞թե չստացան։ Եվ ի՞նչ կմտածեն իր՝ սովետական պատանու մասին, եթե, իրոք, չստացած լինեն։

Վերջապես եկավ նաև այդ ցանկալի լուրը։ Ծրարի վրա չեխական դրոշմանիշ նկատելով, Գիվին հուզվեց։ Նա արագ պատռեց ծրարը և նամակն աչքի անցկացնելով, խնդությունից պայծառացավ։ «Ստացել են»։ Նամակը բռի մեջ սեղմած վազեց դպրոց։

Չեխ պատանիները գրում էին.

«Թանկագին բարեկամ։ Քո ծանրոցը ստացանք այն ժամանակ, երբ մեր քաղաքի ամբողջ բնակչության հետ միասին, մենք ֆաշիստների ավերած արվարձանի տեղը նոր այգի էինք գցում։ Հենց այդ այգում որոշեցինք մի հատուկ ծառուղի գցել քո ուղարկած սերմերից։ Եվ երբ մտածում էինք նոր ծառուղու անվան մասին, շատ անուններից ընտրեցինք ամենաթանկագինն ու ամենահարմարը՝ «Խաղաղության ծառուղի»։



ՎԱՐԴԳԵՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Նա դեռ փոքրիկ է, հազիվ, հազիվ
Մորն ուրիշներից տարբերում է,
Ժապավենը չի հյուսվում մազից,
Խաղալիքը միշտ բերանում է:
Նա դեռ փոքրիկ է, փոքրիկ այնքան
Ու քեզ պաշտպանել դեռ չի կարող,
Բայց նրա փափուկ թաթիկներում,
Ջինջ աչքերի մեջ, լացում անգամ
Ապրելու տենչ կա, կյանքի կարոտ:

Նա դեռ փոքրիկ է, փոքրիկ այնքան,
Խաղաղությո՛ւն, դու պետք ես նրան:

Իսկ չարաճճի այս լավ տղան
Մանկապարտեզ է գնում վաղուց,
Անվերջ ուզում է երգել, խաղալ
Զգտելով ճաղբել ամեն խաղում:
Անգիր ասում է «Լենին պապին»
Ու գրքեր էլ նա ունի արդեն.
Հոր հետ շրջում է նա քաղաքում,
Անվերջ հարցեր է տալիս ճամփին
Եվ պահանջում է պատասխանել:

Նա հազիվ, հազիվ կյանք է մտնում,
Դու պետք ես նրան, խաղաղությո՛ւն:

Այս լավ աղջկա կրծքին արդեն
Պզկապն է շողում գույնով արյան.
Նա սովորում է ապրել, հաղթել,
Ինչպես Հունանը, ինչպես Զոյան:
Ուզում է դառնալ մեկ օդաչու,
Մեկ գյուղատնտես, մեկ ուսուցիչ.
Ու բաց է կյանքում ամեն ճամփա.
Չէ՞ որ նրա հայրն ընկավ Կերչում
Հանուն այս խաղաղ լուսաբացի:

Նա վառ երազներ ունի սրտում,
Դու պետք ես նրան, խաղաղությո՛ւն:

Աշխարհում մանուկ կա ամեն տեղ,
Ամեն քաղաքում, ամեն գյուղում,
Մանկան ժպիտ կա ամենուրեք.
Բայց ես նրանց եմ իմ խոսքն ուղղում,
Որոնք ապրում են բաց երկնքի տակ,
Որոնք ապրում են առանց հացի,
Որոնք հազում են երգելու տեղ,
Ու կյանքն անցնում է առանց կատակ,
Ում մանկությունն է փոխված լացի:

Որպեսզի գտնեն նոր մանկություն,
Դու պետք ես նրանց, խաղաղությո՛ւն:

Մանկությունն է հույսն այս աշխարհի,
Մարդկության ծաղիկն ու ապագան,
Դրա համար էլ իմ մեծ երկրում
Թանկ է ժպիտը ամեն մանկան:
Սակայն աշխարհի քանի՞ մասում,
Մանկություն չունի ոչ մի մանուկ.
Չունի երգ, երազ ու խաղալիք.
Քանի մանուկ է հաց երազում՝
Աչքերում և՛ հույս, և՛ արտասուք:

Սակայն որտեղ էլ լինեն նրանք.
Ինչպես էլ ապրեն այս աշխարհում.
Խաղաղությո՛ւն, դու պետք ես նրանց,
Դու պետք ես նրանց, խաղաղությո՛ւն:

ԱԼԵՔՍԵՅ ՄՈՒՍԱՏՈՎ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

# ՀՐԱՇՔ ՄԵՔԵՆԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Երրորդ օղակը հավաքվել էր պիոներական ակումբում: Օղակավար Վիտյա Պոպովկինը դեռ չէր բացել օղակի հավաքույթը, երբ շնչակտուր ներս ընկավ Միշա Ռեմեշկովը և հուզված բացագանչեց.

— Տղանե՛ր, ես հետախուզեցի: Հենց հիմա մի նոր մեքենա բերեցին Վոլգա-Դոնի համար:

Պիոներներն իսկույն շրջապատեցին Միշային և սկսեցին հարցերի տարափ տեղալ: Ի՞նչ մեքենա, ե՞րբ, որտեղի՞ց:

Տղաները խմբվեցին պատուհանի առաջ: Խուտորից այն կողմ, կայարանի մոտ նրանք տեսան մի բեռնատար գնացք՝ բարձված փայտե երկար արկղներով, պողպատե ձողերով, հաստ թիթեղով: Փայտե երկարավուն արկղների վրա գրված էր. «Կոմունիզմի մեծ կառուցումներին՝ Ուրալցիներից»:

— Դա իսկի էլ մեքենա չէ,— ասաց Վիտյա Պոպովկինը,— ուղղակի զանազան շինանյութեր են բերել...

— Վա՜հ... իսկ եթե ես եղել եմ կայարանում... եթե ամեն բան հետախուզել եմ ինչպես հարկն է,— նեղացավ Միշան և սկսեց համոզել տղաներին, որ նոր մեքենան բացառիկ մեքենա է, ոչ սովորական. այդպիսին դեռ ոչ ոք չի տեսել՝ դա կոչվում է «քայլող»: Քանի որ մենք առաջինն ենք իմացել այդ մեքենայի մասին, թող ուրեմն մեր օղակի վրա էլ գրվի,— պնդում էր Միշան:



— Լավ,— ասաց Վիտյան,— կսպասենք՝ կիմանանք, թե ինչ մեքենա են բերել, գուցե դու էլի սխալվում ես...

Մի քանի օր հետո երկաթուղու վագոնները բեռնաթափեցին և ամեն ինչ տեղափոխեցին տափաստան: Տափաստանում միանգամից սկսեց եռալ աշխատանքը: Բանվորները պողպատյա հաստ ձողերը միացնում էին միմյանց, լայն ու հաստ երկաթյա թերթերն իրար զոդում: Տղաներին թըվում էր, թե որոշել էին տափաստանում երկաթյա մեծ շենք կառուցել: Օր-օրի վրա երկաթյա տունը բարձրանում էր ու բարձրանում:

— Երևի ինչ որ արհեստանոց կամ նորոգման գործարան են կառուցում,— ասաց օղակավար Վիտյան,— իսկ դու ասում էիր մեքենա... այն էլ քայլո՜ղ...

Միշան շատ ուշադիր նայում էր, որ նոր տունը մեքենայի նմանեցնի, բայց ոչինչ չէր ստացվում:

Նա տխրեց: Ըստ երևույթին, այն ժամանակ կայարանում մեծերի խոսակցությունը լավ չէր հասկացել, կամ շփոթել էր, թե ինչի մասին են նրանք խոսում: Ճիշտ է ասում Պոպովկինը, որ ինքը վատ հետախույզ է:

Մի անգամ Միշան դպրոցից շուտ վերադարձավ տուն: Նրա հետ Վիտյա Պոպովկինն էլ եկավ: Նրանք միասին նստեցին դասերը պատրաստելու: Հանկարծ Միշան գրքերի պահարանում տետրերի ու դասագրքերի կողքին անծանոթ գրքերի մի կապոց նկատեց: Նստարանի տակ դրված էր փայլուն զսպանակներով մի մեծ ճամպրուկ, իսկ անկյունում կաշվե վերարկու էր կախված:

— Մայրի՛կ, այս ո՞վ է եկել մեզ մոտ:

— Մեր տանը պետք է բնակվի ինժեներ Լոսևը,— բացատրեց մայրը:

— Իսկ ի՞նչ գործի ինժեներ է նա,— անհամբերությամբ հարցրեց Միշան:

— Ճիշտն ասած չգիտեմ, նա ասաց, թե ջրանցք պետք է փորի մի ինչ-որ հատուկ մեքենայով, որը իբր թե քայլել գիտե…

— Ի՞նչ, ի՞նչ,— վեր թռավ Միշան։

— Այդպիսի մեքենաներ չեն լինում,— նկատեց Վիտյա Պոպովկինը։

— Ինչպե՞ս թե չեն լինում, չէ որ ինքը ինժեներն ասաց,— զարմացավ Միշայի մայրը։

— Իսկ մենք կհարցնենք իրենից՝ ինժեներից,— ասաց Միշան։

— Այդ արդեն չեղավ, դուք չփորձեք խանգարել. նա զբաղված և խիստ մարդ է,— զգուշացրեց մայրը։

Միշայենց տան նոր բնակիչը վերադարձավ իրիկնադեմին։ Միշան և Վիտյան կարծում էին, թե կտեսնեն տարիքավոր, մռայլ դեմքով, ակնոցները քթի ծայրին, մորուքավոր մի մարդու, բայց սենյակ մտավ շիկահեր մի երիտասարդ, արևից գունաթափ, սպայական զգեստով, դաշտային պայուսակը ձեռքին։ Ինժեներ Լոսևը մենակ չէր, նրա հետ եկել էին տասը հոգի։ Դրանք ինժեների օգնականներն էին։

Լոսևը բարևեց Միշային ու Վիտյային, ինչ-որ բան շշնջաց Միշայի մոր ականջին և իր օգնականներին խնդրեց նստել։ Հետո նա հայտարարեց, որ այսօրվանից իրենց բրիգադան սկսում է պարապմունքները նոր հզոր հողափոր մեքենան ուսումնասիրելու համար։ Այդպիսի մեքենա աշխարհը չի տեսել։ Դա սովետական կոնստրուկտորների ստեղծագործությունն է, իսկ կառուցել են Ուրալի բանվորները։ Այդ մեքենան 120 երկաթուղային վագոններով բերել են այստեղ տափաստան՝ ջրանցքի կառուցման համար։

Հողափորն անչափ մեծ է և հզոր։ Նա շարժվում է ոչ թե անիվներով կամ թրթուրներով, այլ քայլում է հսկա պողպատյա դահուկներով։ Դրա համար էլ կոչվում է «Քէ»—քայլող էքսկավատոր։

— Իսկ ես քեզ ի՞նչ էի ասում՝ քայլող մեքենա, նշանակում է ճիշտ եմ հետախուզել։

— Թույցե և ճիշտ է,— անհարմար զգալով փնթփնթաց Վիտյան,— դե, ինչպե՞ս կարող է այդպիսի մեքենան քայլել… չէ՞ որ մի հսկա տուն է…



— Ա՛յ, հիմա կլսենք, կիմանանք։

Ձնայած տղաները շունչները պահած և կլանված լսում էին ինժեներին, բայց քիչ բան հասկացան։

Այնուհետև ինժեներ Լոսևը պատից կախեց մի լրագիր, վառարանից վերցրեց ածխացած փայտի մի կտոր և սկսեց ինչ որ բան գծել, բայց լրագիրը պատռվեց։

— Այո, մեր դասարանը պարապելու համար այնքան էլ հարմար չէ,— ծիծաղելով ասաց ինժեները և պատից կախեց մի ուրիշ լրագիր։

— Իսկ ես կարող եմ ձեզ ֆաներկա տալ, ուզո՞ւմ եք բերեմ,— խոհանոցից գլուխը հանելով ասաց Միշայի մայրը։

Նա գնաց նախասրահը և շուտով վերադարձավ ծռմռված ֆաներկայի մի կտոր ձեռքին։ Ինժեները ֆաներան հենեց պատին և սկսեց գծագրել։

— Այժմ արդեն հարմար է, կարծես իսկական գրատախտակ լինի,— ժպտալով դիմեց ինժեները Միշայի մորը,— շնորհակալություն, մայրի՛կ։

Վիտյա Պոպովկինը դժգոհությամբ նայեց Միշային։

— Ա՜յ թե ինչպիսին է քո մայրը… իսկ մենք՝ անհասկացողներս անտարբեր պառկել ենք։

Միշան շուռ եկավ դեպի ընկերը, խորը շնչեց, ապա բռնեց նրա ձեռքը։

— Գիտե՞ս ինչ, արի նրանց համար

գրատախտակ գտնենք, իսկական դասարանական, թող ինչպես հարկն է պարապեն։

— Արի,— ուրախացավ Վիտյան։

Հետևյալ օրը երեխաներն սկսեցին գրատախտակ փնտրել։ Նրանք տակն ու վրա արեցին դպրոցի տանիքը, մտան սանդուղքների տակ, դպրոցի փայտանոցը, բայց ոչ մի տեղ գրատախտակ չգտան։ Հետո նրանք վազեցին դպրոցի պահեստը։ Միշան գլուխը մտցրեց պահեստի նեղ պատուհանից և ջարդված նստարանների մեջ մի հին գրատախտակ նկատեց։

Տղաներն իսկույն սլացան պահեստապետի մոտ։

— Այդ ի՞նչ է,— զարմացավ պահեստապետը,— նորի՞ց ինչ որ ֆոկուսներ եք հնարել։ Ավելի լավ է չխնդրեք, չեմ տա։

— Բոլորովին էլ ֆոկուսներ չեն,— ասաց Միշան,— գրատախտակը հարկավոր է կոմունիզմի կառուցումների համար։

— Ասացեք խնդրեմ,— քմծիծաղ տալով բացագանչեց պահեստապետը,— իսկ դուք դպրոցական նստարաններ, մատիտներ, գրչածայրեր պատահմամբ չե՞ք ուզում կոմունիզմի կառուցումների համար։

Միշան և Վիտյան պահեստապետից սարսափելի նեղացած իրենց ուսուցչուհի Գալինա Սերգեևնային պատմեցին այդ մասին։ Նրան հետաքրքրեց տղաների արարքը և նա խոսեց պահեստապետի հետ։

Այդ օրը գրատախտակը երրորդ օղակի պիոներների մոտ էր։ Տղաները գրատախտակը նավթով և տաք ջրով լվացին։ Գրատախտակը մաքրվեց և նրա վրա երևացին կարմիր թեք գծերը։

Իրիկնադեմին պիոներները գրատախտակը բարձր բռնած, հանդիսավորությամբ անցան ամբողջ խուտորով և տարան Միշայենց տուն։

Ինժեներ Լոսևը զարմացած դիմավորեց տղաներին։

— Ի՞նչ եմ տեսնում. գրատախտա՞կ... իսկակա՞ն... դպրոցակա՞ն... այս որտեղի՞ց, տղանե՛ր։

— Սա ձեր պարապմունքների համար է, մեր օղակի կողմից,— ասաց Միշան և գրատախտակի կողքին դրեց երեք կտոր կավիճ և մի ջնջոց։

Ինժեները ձեռքով շփեց փայլող գրատախտակը և երկու անգամ «շնորհակալություն» հայտնեց տղաներին, իսկ պիոներները խմբված էին դռների մոտ և չէին հեռանում։

Վերջապես Միշան մի քանի անգամ հազալով ուզեց հասկացնել օղակավարին, ապա ծածուկ հրեց նրան դեպի ինժեները։

— Ընկե՛ր Լոսև,— դժվարությամբ սկսեց Վիտյան,— իսկ կարելի՞ է ձեզ հետ բարեկամություն հաստատել... Եվ ձեր մեքենայի հետ...

— Ինչու չի կարելի,— ժպտաց ինժեները, — բարեկամությունը արժեքավոր բան է։

Վիտյան ավելի համարձակ դարձավ։

— Իսկ դուք եկեք մեզ մոտ, ջոկատի հավաքույթին և մեզ պատմեցեք, թե ինչպես է այդ մեքենան հողը քանդելու, ինչպես է նա քայլելու...

— Մեծ ուրախությամբ,— համաձայնեց ինժեները,— միայն ոչ հիմա, մի քիչ ուշ, այն ժամանակ, երբ մեքենան գործի դնենք։

Նա մի քանի վայրկյան մտածելուց հետո տղաներին հավաքեց իր շուրջը։

— Ա՛յ, մի բան էլ ես եմ ուզում ձեզ խնդրել։ Ես էլ ձեզ նման մի փոքրիկ տղա ունեմ։ Նա այժմ Մոսկվայումն է։ Նրան Կոլյա են անվանում և ձեզ նման նա էլ է կառուցումներով հետաքրքրվում։ Այ, դուք մեկ-մեկ գրեցեք նրան, թե ինչպիսի մարդիկ կան այստեղ, ինչպիսի մեքենաներ...



— Դա մենք կարող ենք,— առաջ գալով ասաց Սերյոժան,— մեզ մոտ Միշա Ռեմեշկովը լավ նամակներ է գրում։

— Ինչո՞ւ Ռեմեշկովը,— հակաճառեց Վիտյան,— մենք Մոսկվա կգրենք ամբողջ օղակով, միայն թե ձեր տղայի հասցեն տվեք մեզ։

Այդ օրվանից երրորդ օղակի տղաները միասին նամակներ էին գրում Մոսկվա՝ Կոլյա Լոսևին։

Վերջապես հասավ այն օրը, երբ քայլող էքսկավատորը սկսեց փորել հողը։

Այդ օրերին ինժեներ Լոսևը շատ ուշ էր պառկում քնելու և արթնանում էր դեռ լույսը չբացված։ Նա շատ էր հուզվում։ «Տեսնես՝ ինչպես կգործի մեքենան»։

Պիոներները նույնպես շատ վաղ էին արթնանում և բարձրանում էին մի մեծ բլուրի վրա, որտեղից պարզ երևում էր հրաշք մեքենան։ Ահա սկսեցին դղրդալ մոտորները, շերեփը իջնելով ցած, չոր հողի մեծ շերտ պոկեց և երկաթյա լարերի միջոցով բարձրացավ վերև։ Երկար մեծ սլաքը, որ կարծես հսկայի ձեռք լիներ, հողով լի շերեփը օդում թեքելով տարավ շատ հեռու, թափեց և վերադառնալով նորից վերցրեց հողը, ապա նորից ու նորից...

Տղաները հասկացան, որ հրաշք մեքենան աշխատում է։ Նրանք ծափ տվին և ուռա գոչեցին։

Երեկոյան դեմ մեքենան արդեն շատ խոր փոսեր էր փորել, իր կողքերին հողե սարեր գոյացրել։

Ուսուցչուհին տղաներին պատմեց, որ այդ հզոր հողափոր մեքենան միանգամից փոխարինում է մի քանի հազար բանվորի։ Ինժեներ Լոսևը շատ գոհ վերադարձավ տուն։

Անցավ մի տարի։ Մեծ քայլող էքսկավատորը աշխատում էր օր ու գիշեր։ Նա կիլոմետրերով քանդում էր Վոլգա-Դոն ջրանցքի հունը։ Օրեցօր ամրանում էր մեխանիզատորների և տղաների բարեկամությունը։

Տղաները մի քանի անգամ ինժեներ Լոսևին և նրա օգնականներին հրավիրեցին իրենց պիոներական հավաքույթներին և դպրոցական երեկոներին։ Շոգ ամռանը նրանք էքսկավատորի անձնակազմի համար աղբյուրի սառը ջուր և թարմ լրագրեր էին բերում։

Պիոներները չէին մոռանում Կոլյա Լոսևին։ Նրանք շատ հաճախ գրում էին ջրանցքի շինարարության մասին։ Ահա թե ինչ էին գրել Սուխայա Բալկայի տղաները իրենց վերջին նամակում՝ Մոսկվա, Կոլյա Լոսևին։



«Սիրելի Կոլյա։ Ջրանցքը, որտեղ աշխատում է քո հայրը, արդեն համարյա պատրաստ է։ 1952 թվի գարնանը ջուրը կըհոսի ջրանցքով և այնտեղ կլողան բազմաթիվ նավեր։ Մեր Սուխայա Բալկան կըտարածվի ջրանցքի ափին։ Մենք շատ ջուր կունենանք և մեր խոտը կկանաչապատենք։ Հիմա մենք ուզում ենք մեր գյուղի անունը փոխել. Սուխայա Բալկայի փոխարեն դնել Զելյոննայա Բալկա։ Երբ դպրոցն ավարտենք անպայման կգնանք մեծ կառուցումներում քայլող էքսկավատորի վրա աշխատելու, որպես ինժեներներ կամ մեխանիկներ։ Մեզ շատ է դուր գալիս այդ հսկա մեքենան, չնայած քո հայրն ասում է, թե մինչև մենք մեծանանք, այս մեքենաներին կփոխարինեն ավելի մեծ, ավելի հզոր ու լավ մեքենաներ։ Թանկագին Կո-

լյա, արի մեզ մոտ՝ ջրանցք։ Եթե այս տարի չես կարող, ապա մյուս տարի անպայման արի։ Միայն ոչ գնացքով, այլ նավով, ուղղակի Մոսկվայից մինչև Ձեյլոննայա Բալկա (նախկին Սուխայա Բալկա)։ Մեծ անհամբերությամբ սպասում ենք քեզ»։

Թարգմ. Հ. ՂԱՓԼԱՆՅԱՆ



# ԱՌԱՋՆՈՐԴԻՆ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





Հենց որ բացվում է
Պայծառ առավոտ,
Շողերն արևի
Ժպտում են վերից,
Մեզ թվում է թե,
Մեր մեծ Առաջնորդ,
Դու ես տարածում
Լույսը Կրեմլից։

Դու մեզ տվեցիր
Լուսավոր օրենք,
Կոփեցիր մեր մեջ
Բարեկամություն,
Այն, ինչ նախկինում
Երազ է եղել,
Այսօր դարձել է
Իրականություն։

Կոնստիտուցիայում
Գրված ամեն բառ,
Գարնան ծաղկի պես
Ունի կյանք, բուրմունք,
Ուսման, հանգստի
Ու գործի համար,
Ամեն մարդ մեզ մոտ
Ունի իրավունք։

Այն ինչ տեսնում ենք
Մեր շրջապատում,
Գործարան ու հանք,
Արտերը համայն,
Ամեն, ամեն ինչ
Մեզ են պատկանում՝
Հարազատ երկրում
Մեր Սովետական։







# ՆԻԿՈԼԱՅ ՕՍՏՐՈՎՍԿԻ

Շ. ՍԱՖՅԱՆ



Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

— Ապա, մոտ եկեք, աղավնյակնե՛րս։

Հայր Վասիլին բարձրացավ տեղից, աթոռը ետ քաշեց և կիպ մոտեցավ երեխաներին։

— Ո՞վ է ձեզնից՝ ստորներից, ծխում։

Բոլոր չորս հոգին էլ կամաց պատասխանեցին։

— Մենք չենք ծխում, տե՛ր հայր։

Տերտերի դեմքը կարմրատակեց բարկությունից։

— Չե՞ք ծխում սրիկանե՛ր, իսկ ո՞վ է խմորի մեջ թութուն լցրել։ Չե՞ք ծխում, դե մենք հիմա կտեսնե՛նք։ Շուտ տվեք ձեր գրպանները։ Դե՛, շո՛ւտ։ Ես ձեզ ի՞նչ եմ ասում. շո՛ւտ տվեք։

Աշակերտներից երեքը սկսեցին սեղանի վրա լցնել իրենց գրպանների պարունակությունը։

Տերտերն ուշադրությամբ զննեց գրպանների կարերը, փնտրելով թութունի հետքեր, բայց ոչինչ չգտնելով, սկսեց քննել չորրորդին՝ սևաչյա, մոխրագույն վերնաշապկով և ծնկները կարկատած կապույտ վարտիքով տղային։

— Իսկ դու ի՞նչ ես անշարժ ցցվել։

Սևաչյան նայելով թաքուն ատելությամբ, խուլ պատասխանեց.

— Ես գրպաններ չունեմ,— և ձեռքերը տարավ կարված գրպանատեղերի վրայով։

— Ա՜, գրպաններ չունե՞ս։ Ուրեմն դու կարծում ես ես չգիտե՞մ, թե ո՛վ կարող էր այդպիսի ստորություն անել՝ փչացնել խմորը։ Դու կարծում ես՝ սրանից հետո է՞լ դպրոցում կմնաս։ Չէ՛, աղավնյակս այդ քեզ էժան չի նստի։ Անցյալ անգամ մայրդ մի կերպ խնդրեց, համոզեց, որ քեզ պահեմ, իսկ հիմա՝ վե՛րջ։ Դո՛ւրս դասարանից։

Նա ցավեցնելու չափ բռնեց տղայի ականջից, դուրս հրեց միջանցք և ետևից դուռը փակեց։

Դասարանը հանդարտվեց։ Ոչ ոք չէր հասկանում, թե ինչո՛ւ են Պավկա Կորչագինին դպրոցից դուրս վռնդում...

Այսպես, 1915 թվականին, դեռևս երկրորդ դասարանում, վերջացավ Նիկոլայ Օստրովսկու ուսումը Շեպետովկայի երկդասյա դպրոցում։

Ընտանիքն ապրում էր ծանր պայմաններում։ Տասներկու տարեկան Օստրովսկին աշխատանքի ընդունվեց կայարանի ճաշարանում, հետո դարձավ կաթսայագործի աշակերտ, ապա էլեկտրամանտյորի օգնական։ Ծանր էր աշխատանքը. օրը 12—16 ժամ, երբեմն և ավելի, նա անց էր կացնում շիկացած կաթսայի առաջ։ Բայց նա սիրում էր գրքեր։ Միշտ աշխույժ, կրակոտ ու անհանգիստ պատանին մոռանալով խաղն ու ընկերներին, մինչև կես գիշեր անց էր կացնում իր սիրած գրքերի հետ, տարվելով ընթերցանությամբ։ Նա գրադարան չուներ։ Պատահականությամբ ձեռք բերած գրքերը նա կլանում էր արագությամբ, նրանցով տարվում ինքնամոռացության չափ։

1919 թվականին Նիկոլայ Օստրովսկին ընդունվեց կոմերիտմիության շարքերը։ 15 տարեկան պատանին որպես կամավոր մեկնեց ռազմաճակատ և Կարմիր Բանակի լե-

զենդար հրամանատարներ Կոտովսկու և Բուդյոննու բանակներում կռվեց Հայրենիքի անկախության և ազատության համար։

Քաղաքացիական կռիվների ժամանակ ծանր վիրավորվելն ու տիֆով հիվանդանալը քայքայում են Օստրովսկու առողջությունը, բայց նա չի հուսահատվում։ Զորացրվելով նա սկսում է աշխատել Համամիութենական Արտակարգ հանձնաժողովի օրգաններում, մասնակցում է բանդիտների դեմ ուղղված շարժմանը, աշխատում է շինարարության վրա։ 1924 թվականին, քսան տարեկան հասակում, նա ընդունվում է Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի շարքերը։ Բայց հիվանդությունը քանի գնում ծանրանում է։ Սկսվում է ողնաշարի փայտացում։ Օստրովսկին անկողին է ընկնում, կորցնում է շարժվելու ընդունակությունը, զրկվում է տեսողությունից։ Սակայն այդ վիճակում էլ բոլշևիկ-մարտիկը չի զիջում իր դիրքերը։ Այն ջերմ համոզմունքով, որ միշտ էլ պետք է օգտակար լինել իր պարտիային, նա շարունակում է աշխատել երիտասարդության հետ։ Նրանց իր մոտ է հավաքում, սովորեցնում, հարստացնում նրանց քաղաքական գիտելիքները։ Իսկ երբ զրկվում է նաև այդքանն անելու հնարավորությունից, նա սկսում է գրել Կոտովսկու հերոսական դիվիզիայի պատմությունը։

Գրել, ահա միակ հնարավոր զենքը, որ մնացել էր նրա ձեռքում։ Դրանով նա կարող էր փշրել այն «երկաթյա ծանր օղակը», որը ժամ առ ժամ հիվանդությունը կռում էր նրա շուրջը։ «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպի առաջին օրինակը նա ուղարկեց տպագրության։ Եվ ահա Լենինգրադից եկավ հեռագիր.

«Վեպը ընդունվեց մեծ ջերմությամբ։ Սկսում ենք հրատարակել։ Շնորհավորում ենք հաղթանակի համար»։

Հիվանդության հյուսած «երկաթե ծանր օղակը» փշրվում է, և նա նորից, այս անգամ արդեն նոր զենքով, վերադառնում է դեպի կյանք ու աշխատանք։

Վերջապես լույս է տեսնում՝ «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպը։ Օստրովսկին պարգևատրվում է Լենինի շքանշանով։ Այս առթիվ ընկեր Ստալինին գրած նամակում նա գրում է.

«Ծանր հիվանդությունը ինձ անշարժության մատնեց, բայց ես ավելի մեծ կրքոտությամբ եմ շարունակելու հարվածել թշնամուն մի այլ զենքով, որով ինձ զինել է Լենինի—Ստալինի պարտիան, ինձ՝ կիսագրագետ բանվոր երիտասարդին դարձնելով սովետական գրող»։

«Փոթորկածինները» վեպի վրա, որը լույս տեսավ հեղինակի մահից հետո, նա աշխատում էր մինչև իր կյանքի վերջին օրը՝ 1936 թվի դեկտեմբերի 22-ը։

Նիկոլայ Օստրովսկի... Այս անունը դարձել է սովետական երիտասարդության, պատանիների ու աղջիկների ամենասիրելի անուններից մեկը։ «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպի հերոս Պավել Կորչագինին նմանվելով, միլիոնավոր երիտասարդներ կռվել են Հայրենական պատերազմի ճակատներում։

Զոյայի, Օլեգ Կոշևոյի, Լիզա Չայկինայի օրագրերում կարելի է տեսնել հատվածներ, մեջբերումներ այդ հերոսական վեպից։ «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպն այժմ էլ և դեռ շատ տարիներ մեր մանուկ սերնդին, մեր երիտասարդությանը և սովետական ողջ ժողովրդին կմղի դեպի հերոսական ապագայի անձնուրաց կերտումը։



## ԽՈՍՔ ԱՌԱՋՆՈՐԴԻ ՄԱՍԻՆ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Թանկագին ես մեզ համար,
Դու հարազատ, ազնիվ մայր.
Դու տնակում քո անշուք
Փայփայել ես մի մանուկ։

Օրորել ես ու սնել
Օրորոցում Սոսոյին,
Դու մեր բախտն ես օրորել,
Մեր կենսատու Արևին։

Գուրգուրել ես քո գրկում
Սոսոյին ժիր ու կայտառ,
Դու մի անշուք տնակում
Մեծացրել ես մի աշխարհ։

---

Կատարում ենք ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումները

# ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Ցոլա Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

*Դրուժինայի խորհրդում քննության առնելով ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումները, մենք ձեռնամուխ եղանք մեր աշխատանքները այդ որոշումների ոգով վերակառուցելու գործին։ Դրուժինայի խորհրդի նիստում, որին մասնակցում էին դպրոցի դիրեկտորը, ուսմասվարը, դասղեկները, մենք մշակեցինք դրուժինայի հետագա անելիքների օրացուցային պլան։*

*Առաջին կարևոր միջոցառումը եղավ պիոներական ակտիվի ուսուցման հարցը։ Ակտիվի համար կազմակերպվեցին սեմինար պարապմունքներ։ Արդեն պարապմունքներ են տեղի ունեցել «Ինչպես կազմել ջոկատի աշխատանքի պլանը», «Ինչպես նախապատրաստել և անցկացնել հավաքույթը», «Պիոներական կազմակերպության դերը խորը և հաստատուն գիտելիքներ ձեռք բերելու գործում» և այլ թեմաներով։ Այս պարապմունքները շատ օգնեցին պիոներական ակտիվին։*

*Պիոներական կազմակերպության աշխատանքը համարվում է դպրոցի ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բաղկացուցիչ մասը։ Այդ նշանակում է, որ պիոներական կազմակերպությունը հիմնականում պետք է պայքարի ուսման որակի բարձրացման և գիտակցական կարգապահության ամրապնդման համար։ Պիոներական դրուժիններն ու ջոկատները պարտավոր են ուսուցչին օգնել, որպեսզի յուրաքանչյուր դասն անցնի կազմակերպված, աշակերտներն ուշադրությամբ լսեն ուսուցչի բացատրությունները, դասի ժամանակ լինեն ակտիվ, ճշտությամբ կատարեն տնային առաջադրանքները։*

*Ուսման որակի բարձրացման գործում*



Նար-Դոսի անվան դպրոցի Ուլյանա Գրոմովայի անվան դրուժինայի խորհուրդը քննության է առնում ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումները։




Ուլյանա Գրոմովայի անվան դրուժինայի 8-րդ ջոկատի առաջին օղակի պիոներները շատ գրքեր են կարդում:
Նկարում՝ առաջին օղակի պարապմունքում քննարկվում է Ելենա Կոշևայի «Պատմվածք որդու մասին» գիրքը:

*խոշոր դեր կարող են խաղալ առարկայական հավաքույթները։ Այդպիսի հավաքույթներ մենք անց ենք կացնում բոլոր ջոկատներում։*

*Առանձնապես արդյունավետ էր 3-րդ ջոկատի հավաքույթը՝ «Ճանապարհորդություն ՍՍՌՄ-ում քարտեզով» թեմայով։ Հավաքույթի նախապատրաստմանն ու անցկացմանը ակտիվ մասնակցություն ցույց տվեց աշխարհագրության դասատու ընկեր Շահբազյանը։ Ջոկխորհրդի որոշմամբ նախօրոք հանձնարարություններ տրվեցին օղակներին։ Առաջին օղակի պիոներները պատրաստել էին կոմունիզմի մեծ կառուցումների քարտեզը։ Օղակը նախապատրաստել էր նաև մի ուրիշ զեկուցում՝ «ՍՍՌՄ-ի արդյունաբերական կենտրոնը» թեմայով։ Երկրորդ օղակի պիոներները պատրաստել էին զեկուցում և դիագրամաներ՝ բարգավաճած Սիբիրի վերաբերյալ։*

*Երրորդ օղակի պիոներները կազմել էին մեծ քանակությամբ աշխարհագրական վիկտորինաներ։*

*Հավաքույթը շատ հետաքրքիր անցավ և օգնեց պիոներներին լայնացնելու իրենց աշխարհագրական գիտելիքները։ Այժմ այդ ջոկատի պիոներները աշխարհագրությունից ստանում են 4 և 5 գնահատականներ։ Նույնքան հետաքրքիր անցավ նաև երկրորդ ջոկատի հավաքույթը նվիրված սովետական քիմիայի նվաճումներին։*

*Ուսման որակի բարձրացմանը նպաստում են նաև՝ «Ռոպեի գնահատումը», «Ինչպես օգտագործել ժամանակը», «Ինչպես էր աշխատում Վ. Ի. Լենինը» և այլ թեմաներով հավաքույթները։*

*Այդ թեմաներով անց ենք կացրել նաև օղակային պարապմունքներ, օրինակ՝ 8-րդ ջոկատի առաջին օղակում։ Պարապմունքներ տեղի կունենան նաև մյուս օղակներում։*

*Գիտելիքների խորացման ու ամրապնդման գործում խոշոր դեր են խաղում նաև էքսկուրսիաները։ Էքսկուրսիաներ ենք կազմակերպել դեպի բուսաբանական այգի, աստղադիտարան և մոտակա անտառը։*

*Մեր դրուժինայի պիոներները լուրջ պարտավորություններ են վերցրել ետ մնացող աշակերտներին օգնելու համար։ Վեցերորդ ջոկատի երրորդ օղակի պիոներները հերթով այցելում էին իրենց հիվանդ ընկերուհուն, օգնում նրան, բացատրում դասերը։ Այդպես, ջոկատն օգնում է նաև մյուս ետ մնացողներին։ Ձեռք են առնվել և իրագործվում են նաև մի շարք այլ միջոցառումներ։*

*Ուսման որակի, կարգապահության բարձրացման համար է պայքարում մեր դրուժինան։ Ձեռք բերած հաջողությունները դեռևս առաջին քայլերն են։ ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի ոգով վերակառուցելով մեր ողջ աշխատանքը, մենք այսուհետև ավելի մեծ հաջողությունների կհասնենք։*

*ԱՄԱԼԻԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*
*(Նար-Դոսի անվան միջնակարգ դպրոցի Ուլյանա Գրոմովայի անվան դրուժինայի ավագ ջոկատավար)*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

Դ. ԳԱԼՃՅԱՆ

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

*Մեր պիոներներն ու դպրոցականները հին Երևանը չեն տեսել։ Նրանք չեն պատկերացնում այն հեռավոր մթին անցյալը, որի մեջ ապրել են իրենց պապերը։ Շատ հաճախ, երեկոյան թեյասեղանի առաջ պապերը հիշում են իրենց անցյալը և նկարագրում հին քաղաքը, ուր ապրել են, տառապել, պայքարել լավ կյանքի համար։ Այդ աղոտ անցյալը տեսանելի ձևեր է ստանում։*

*Ահա հին Երևանը։ Ցածրիկ ու խարխուլ, կավե խրճիթները սփռված էին քաղաքով մեկ։ Աշնան ու ձմեռվա ցեխն անհնարին են դարձնում փողոցներով քայլելը։ Կարելի էր խրվել մինչև ծնկները։ Ասենք փողոցներ առհասարակ չկային։ Կավաշաղախ արահետներ, լավագույն դեպքում նրբանցքներ, որոնցով սայլերը հազիվ էին անցնում։ Քաղաքի կենտրոնում, Լենինի հրապարակի տեղը գտնվում էին արհեստավորների փոքրիկ կրպակները, մանր առևտրականների խանութները, Թուրքական բաղնիքը։ Այստեղ էին իրենց բեռնավորված ուղտերին չոքեցնում հեռու տեղերից եկած վաճառականները, այստեղ գալիս էին ուխտավորներ, դերվիշներ, ծաղրածուներ։ Երևանը չուներ կինո, թատրոն, համալսարան։ Այդ խավարի ու աղքատության մեջ հոսում էր հայ աշխատավորների կյանքը։*

*Անցավ երեսուն տարի։ Այժմ Երևանը հրաշքի նման փռված է լույսերի ու կանաչի ծովի մեջ։ Նրա լայն պողոտաներով քայլում են երջանիկ մարդիկ։ Համարյա բոլոր փողոցների վրա բարձրանում են դպրոցական հոյակապ շենքեր։ Այդտեղ սովորում են մեր հազարավոր պիոներներն ու դպրոցականները...*

*Աշնանային գեղեցիկ առավոտ է։ Երկու աղջիկ պիոներական համազգեստ հագած շտապում են դպրոց։ Դրանցից մեկը Մայակովսկու անվան դպրոցի ավագ ջոկատավար Ջեմմա Հասրաթյանն է։ Մյուսը՝ 6-րդ «դ» դասարանի ջոկատավար Լիլիա Բաղդասարյանը։ Նրանք կազմել են ջոկատային հավաքույթի պլանը և այն տանում են դպրոց դիրեկտորի և դասարանի ղեկավարի հետ համաձայնեցնելու։ Նրանք որոշել են իրենց առաջիկա հավաքույթը նվիրել Հայաստանի մայրաքաղաքի պատմությանը, Երևանի անցյալին ու ներկային։*

*Սկզբում թվում էր, թե այդ հավաքույթը հեշտ կլինի անցկացնել. հետո երբ դիրեկտորն ու դասղեկը նրանց հետ խոսեցին, ցույց տվին բազմաթիվ անհրաժեշտ անելիքներ, աղջիկները վախեցան։ Բայց համառ աշխատանքը վերացնում է խոչընդոտները։ Նոր կազմված պլանով էլ նրանք սկսեցին աշխատել։ Ջոկատի անդամները տարբեր հանձնարարություններ ստացան։*



Երևանի Պատմության թանգարանի էքսկուրսավար Ս. Հովհաննիսյանը պիոներներին ցույց է տալիս Օպերայի շենքի մակետը։

Վ. Զուգումովան պետք է պատմեր Երևանի անցյալի մասին, օգտագործելով եղած հարուստ գեղարվեստական գրականությունը, պատմության թանգարանի նյութերը, հասակավորների պատմածները։ Ա. Հակոբյանը պատմելու էր նոր Երևանի և նրա հեռանկարների մասին։ Անհրաժեշտ էր հանդիպում ունենալ քաղաքի գլխավոր ճարտարապետի հետ։ Ջոկատում որոշեցին ամբողջ ջոկատով գնալ Երևանի պատմության թանգարանը։ Էքսկուրսիան շատ հետաքրքիր անցավ։ Այստեղ պիոներները բազմաթիվ



Պիոներները Երևանի գլխավոր ճարտարապետ ընկ. Աղաբաբյանի մոտ։

նկարների և մակետների միջոցով ծանոթացան Երևանի անցյալի հետ։ Նրանք տեսան Երևանի արհեստավորների խանութների, քաղաքային հին ժամացույցի, ցածրիկ ու խարխուլ տների, բաղնիքի շենքի մակետները։

— Նայիր, Լենա, սա Հյուսեին խանն է՝ Երևանի սարդարը,— ընկերուհու ականջին շշնջաց մի պիոներուհի,— մինչև 1828 թվականը Հայաստանը գտնվում էր պարսկական տիրապետության տակ։

Այնուհետև նրանք էքսկուրսիա կազմակերպեցին դեպի քաղաքի նորակառույցները։

Ահա պիոներների մի խումբ կանգնած է Ամիրյանի փողոցի № 67 դպրոցի շենքի մոտ։

— Այստեղ, այս ուսումնական տարում, առաջին անգամ, սկսեցին սովորել հարյուրավոր դպրոցականներ,— բացատրում էր դասարանի ղեկավար ընկեր Պարցևսկայան։

Պիոներները դիտեցին Լենինի նորակառույց գեղեցիկ պողոտան։ Պողոտան փակում է վարդագույն տուֆից կառուցված մի նոր շենք։ Այդ շենքը հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի տուն-թանգարանն է։

Այնուհետև պիոներները շարժվեցին դեպի Բաղրամյանի անվան փողոցը, որն ընդամենը մի քանի տարվա պատմություն ունի։ Ինչքա՜ն նոր շենքեր կան։ Ահա ՀԿ(բ)Պ Կենտկոմի շենքը, որի նախագծի հեղինակը՝ ճարտարապետ Մ. Գրիգորյանը Ստալինյան մրցանակի է արժանացել։ Ահա Գրողների միության, Մարքսիզմ-Լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի, № 55 դպրոցի և շատ ու շատ այլ գեղեցիկ շենքեր։

Էքսկուրսիայի ժամանակ պիոներներն այցելեցին անվանի բանաստեղծ Ավ. Իսահակյանին և ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Հ. Դանիելյանին։ Ապա նրանք եղան քաղաքի գլխավոր ճարտարապետ Աղաբաբյանի մոտ, որը նրանց պատմեց քաղաքի շինարարության հեռանկարների մասին։ Գլխավոր ճարտարապետը պիոներներին ցույց տվեց նախկին Սունդուկյանի անվան փողոցի լուսանկարների ալբոմը։ Մի շարք նկարներ պատկերում էին տասնյակ հին ու խարխուլ տներ, նեղ, ծուռումուռ փողոցներ...



Պիոներները Բաղրամյանի անվան փողոցում դիտում են նորակառույց շենքերը։ Դասղեկ Ս. Պարցևսկայան պատմում է փողոցի մասին։

Բարգավաճել է Հայաստանը, դարձել խոշոր արդյունաբերության և առաջավոր գյուղատնտեսության երկիր: Այդ բանին նա հասել է բոլշևիկների պարտիայի և Մեծ Ստալինի ջերմ հոգատարության շնորհիվ: Որպես այդ մեծ հոգատարության պատասխան, երախտագետ հայ ժողովուրդը կանգնեցրել է առաջնորդի մոնումենտը:

Պիոներներն իրենց վերջին էքսկուրսիան անցկացրին մոնումենտի շուրջը տարածված գեղեցիկ այգում: Այստեղ նրանք զրույց լսեցին Մեծ առաջնորդի մասին:

...Եվ ահա այժմ հավաքույթում պիոներները պատմում են իրենց տպավորությունների մասին, այն բոլորի մասին, ինչ Սովետական Հայաստանը ձեռք է բերել գիտության, կուլտուրայի, արվեստի բնագավառներում: Հետաքրքիր ելույթներ ունեցան՝ ընկեր Ա. Պարցևսկայան, պիոներներ՝ Վ. Զուգունովան, Ժ. Տրիգուբովան, Ա. Հակոբյանը, Լ. Շահնազարյանը և ուրիշները: Հավաքույթի վերջում նրանք նամակ ուղարկեցին Մոսկվայի № 234 իգական դպրոցի 6-րդ «դ» դասարանի պիոներներին:

Նամակն այսպես է վերջանում.

«Սիրելի ընկերներ.

Մենք արդեն կենսագործում ենք Համ. ԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումները, որոնք օգնում են մեզ սովորել և դառնալ ավելի ուժեղ, համարձակ և կոմունիզմի կառուցման համար պիտանի մարտիկներ»:

Առաջնորդին նվիրված խանդավառ երգով նրանք վերջացրին իրենց հետաքրքիր հավաքույթը...

## ՖԻԶԻԿԱՅԻ ԽՄԲԱԿՈՒՄ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Երևանի Հ. Թումանյանի անվան միջնակարգ դպրոցում կա ֆիզիկայի արտադպրոցական խմբակ: Այդ խմբակը ղեկավարում են ֆիզիկայի դասատու Խոսրով Դայանը և ուսման առաջավոր Ժիրայր Էբեյանը: Ֆիզիկայի խմբակում 40 պիոներ-դպրոցականներ կան: Նրանք այդտեղ պատրաստում են նոր ինքնաշեն սարքեր, նոր գիտելիքներ են ստանում և ավելի լավ յուրացնում ֆիզիկան: Խմբակը մի շարք պարապմունքներ է ունեցել, որտեղ աշակերտները կարդացել են զեկուցումներ ֆիզիկայի տարբեր հարցերի շուրջը:

Տպագրում ենք նամակներ, որոնց մեջ Հ. Թումանյանի անվան դպրոցի ֆիզիկայի խմբակի անդամները պատմում են իրենց կատարած աշխատանքների մասին:

* * *

Շինարարության ժամանակ կառուցվածքի դիրքի ուղղաձիգ-հորիզոնական կամ թեք լինելը որոշելու համար անհրաժեշտ է ունենալ ուղղալար և հարթացույց:

Հարթացույց պատրաստելու համար ես վերցրի ուղղանկյունաձև փայտե քանոն՝ 25 սմ × 4 սմ × 5 սմ չափերով, որի միջին մասում, մետաղյա ուղղանկյունաձև բացվածք ունեցող թիթեղի տակ, փայտի փորվածքի մեջ, ծայրերը զոդած ապակե մի խողովակ տեղավորեցի: Խողովակի միջին մասին նախապես ուռուցիկ տեսք տվի: Խողովակի մեջ սպիրտ լցրի և օդի բշտիկ թողեցի:

Այս սարքի համար օգտագործեցի ֆիզիկայի այն պայմանը, որ հարթաչափից չնչին թեքության դեպքում բշտիկը կտեղափոխվի դեպի թեքության բարձունքի կողմը:

Իմ ընկերները պատրաստել են մի շարք ինքնաշեն գործիքներ՝ հարթացույց, ուղղալար, չափերիզ: 7-րդ դասարանի աշակերտ Ստեփան Նազարյանը պատրաստել է մետաղյա ոլորան, իսկ Վարդանյան Արամը՝ ճոճանակ, որը ցուցադրվել է դպրոցական ցուցահանդեսում:

Հ. ԳԵՂՈՒՆԻ

(6-րդ դասարանի աշակերտ)







Թումանյանի անվան դպրոցի ֆիզիկայի կաբինետում: Նկարում՝ աշակերտներ Մ. Սարգսյանը, Ա. Ալիմյանը, Ա. Վարդանյանը, Հ. Գեղունին և Ս. Նազարյանը ստուգում են իրենց պատրաստած ինքնաշեն սարքերի աշխատանքը:

* * *

Էլեկտրական զանգը աշխատում է չընդմիջվող հոսանքով, սակայն նրա մեջ կա ընդհատիչ, որը հնարավորություն է տալիս երկաթյա միջուկին մագնիսանալու և մագնիսաթափվելու:

Ցուցադրական փորձի ժամանակ էլեկտրական զանգի մուրճիկի տատանումներն ավելի տեսանելի դարձնելու համար, ես օգտվեցի «Ֆիզիկա վ շկոլե» ամսագրից և պատրաստեցի նոր էլեկտրական զանգ: Վերջինիս մուրճը փոխարինեցի ճոճանակով, իսկ մետաղյա զանգը՝ աղեղային ցուցանակով:

Մեր ֆիզիկայի խմբակի մյուս անդամները նույնպես զանազան սարքեր են պատրաստում, որոնք օգնում են ֆիզիկայի լավ յուրացմանը:

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ
(8-րդ դասարանի աշակերտ)

* * *

Երևանի Պատանի տեխնիկների կենտրոնական կայանը ամեն տարի հատուկ գրքույկներ է հրատարակում, որոնց օգնությամբ կարելի է պատրաստել ինքնաշեն նոր սարքեր:

Մի օր մեր ֆիզիկայի ուսուցիչ ընկեր Խսարով Դայանը դասարան բերեց այդ գրքույկներից մի քանիսը և բաժանեց մեզ: Մենք ուսուցչի ղեկավարությամբ և գրքույկների օգնությամբ որոշեցինք մեր ֆիզիկայի կաբինետը հարստացնել նոր սարքերով:

Ես սկսեցի պատրաստել էլեկտրական շչակ: Սրա կառուցվածքը շատ պարզ է. մի կիսագլանաձև ոլորած թուղթ է, որի վրա 2 սանտիմետր շառավիղ ունեցող երկաթյա թիթեղ է ամրացված: Թիթեղի դիմաց, պատվանդանին ամրացված է բազմագալար կոճը՝ երկաթյա միջուկով: Նրա միջով անցնում է 120 վոլտ հոսանք: Առանձգական կիսագլանաձև թուղթն իր վրա ամրացված թիթեղի միջոցով տատանվում է և ստացվում է հանգիստ ձայն:

Երկու օր հետո շչակն արդեն պատրաստ էր: Դա մեզ օգնեց ավելի լավ հասկանալու ձայնի առաջացման պայմանները առաձգական մարմինների մեջ:

Ա. ԱԼԻՄՅԱՆ
(9-րդ դասարանի աշակերտ)



# ՄԵՐ ՍՊՈՐՏԻ ՀՐԱՊԱՐԱԿԸ

*Մեր դպրոցն ունի լավ կահավորված սպորտ-դահլիճ։ Այդ դահլիճում մենք պարապում էինք ոչ միայն ձմռանը, այլև գարնանը և ամռանը, որովհետև դրսում սպորտ-հրապարակ չունեինք։ Դպրոցի բակը քարքարոտ էր, բլրապատ։ Թվում էր, թե այդ տարածությունը հարթելու ոչ մի հնարավորություն չկա։*

*Մեր դպրոցի կոմսոմոլի կոմիտեն որոշեց կոմերիտականների և պիոներների ուժերով այդ տարածությունը հարթել և սպորտ-հրապարակ ստեղծել։ Սկզբում շատերը չէին հավատում, թե հնարավոր կլինի այնտեղ հրապարակ պատրաստել։ Բայց մենք չվհատվեցինք և ձեռնամուխ եղանք սպորտ-հրապարակի կառուցմանը։ Երկու տարի համառորեն աշխատեցինք։ Աշխատանքներին մասնակցում էին բոլոր աշակերտները՝ կոմերիտականները, պիոներները, մասնակցում էին նաև ուսուցիչները։ Մենք հարյուրավոր խորանարդ մետր հող տեղափոխեցինք, դուրս բերեցինք հսկայական քարեր։ Դժվարություններ շատ եղան, բայց այդ դժվարությունները մենք հաղթահարեցինք։ Արդյունքը գեղեցիկ ու հարմար սպորտ-հրապարակն էր։*

*Այժմ մեր հրապարակում հնարավոր է խաղալ ֆուտբոլ, վոլեյբոլ, բասկետբոլ և այլ խաղեր։ Հրապարակը հիմնականում պատրաստ է, բայց մենք շարունակում ենք բարեկարգել այն։ Աշնանը մենք հրապարակի շուրջը ծառեր տնկեցինք։ Պիոներները հոգ են տանում, որ այդ ծառերը չփչանան և լավ աճեն։ Պիոներներից յուրաքանչյուրն ունի իր ծառը, որի խնամքը նրա վրա է դրված։*

*Գարնանը մենք ձեռնամուխ կլինենք հրապարակի լայնացման գործին։*

*Մեր պատրաստած սպորտ-հրապարակը հնարավորություն տվեց ֆիզկուլտուրայով ավելի շատ զբաղվելու։ 62 պիոներ արդեն հանձնել են ԵՊԱՊ-ի նորմաները։ Մյուսները հաջողությամբ շարունակում են նորմաների հանձնումը։*

ՀԵՆՐԻԿ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ
(Գրիբոյեդովի անվան դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ, ֆիզկուլտ խորհրդի նախագահ)
ՄԻՇԱ ԳԱԴԻԿՅԱՆ
(Գրիբոյեդովի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ, դրուժինայի խորհրդի անդամ)





Գրիբոյեդովի անվան միջնակարգ դպրոցի սպորտ հրապարակում։

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

## Խաղաղության ՄԱՐՏԻԿՆԵՐԸ

# ՆԱ ՄԵՐ ՇԱՐՔԵՐՈՒՄ Է

Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

1.

«... Պետչեկ պալատի գեստապոյի պետը չի կարողանում համբերել. նա մարդիկ է ուղարկում իմ ետևից, բայց որովհետև բուժակն ամեն անգամ գրում է՝ «տեղաշարժման անընդունակ է», նրանք հրամայում են ինչ միջոցով էլ լինի տեղ հասցնել... Ընկերներս ինձ դնում են պատգարակի վրա և տանում են: Սանդուղքով իջնելիս նրանցից մեկը կռանում է և ասում.

— Մի՛ հուսահատվիր:

Ապա, ավելի ցածր ձայնով, մի քանի խոսքով, հաղորդում է նորությունները:



Այս անգամ գրասենյակում երկար չենք մնում: Երկար միջանցքով ինձ տանում են դեպի ելքը: Միջանցքը մարդկանցով լիքն է: Այսօր հինգշաբթի է, մի օր, երբ հարազատներին թույլատրվում է այցելել բանտարկյալներին: Բոլորը շուտ են գալիս դեպի պատգարակավոր տխուր թափորը. բոլորի հայացքներում խղճահարություն և ցավակցություն կա: Դա ինձ դուր չի գալիս: Ես բարձրացնում եմ ձեռքս և բռունցքս սեղմում: Գուցե միջանցքի մարդիկ տեսնեն ու հասկանան, որ ես ողջունում եմ իրենց»:

Այսպես, իր հայրենիքի ամենածանր օրերին, ֆաշիզմի դեմ արիաբար պայքարում էր չեխ կոմունիստ Յուլիուս Ֆուչիկը: Այդ արիության մասին է, որ նա գրել է իր «Խոսք մահապատժից առաջ» գրքում:

Տարի ու կես նա սպասում էր մահվան: Տարի ու կես դաժանորեն ծեծում էին նրան: Նրա աչքերի առջև գեստապոյականները տասնյակ մարդկանց էին գնդակահարում, ամենալավ մարդկանց: Ֆուչիկը ոչ մի լուր չուներ մոր, քույրերի և ձերբակալված կնոջ մասին: Բայց նա այնքան ուժ գտավ իր մեջ, որ գրեց իր այդ գիրքը, որի մեջ նա կրակե տողերով պատմում է կոմունիստների պայքարի մասին ընդդեմ ֆաշիզմի:

«Խոսք մահապատժից առաջ» գրքի համար Յուլիուս Ֆուչիկին Խաղաղության Պատվավոր մրցանակ է շնորհված:

2.

Յուլիուս Ֆուչիկը ծնվել է 1903 թվականի փետրվարի 23-ին, Պրագայի հնագույն արդյունաբերական թաղամասերից մեկում՝ Սմիխովում: Նրա հայրը մետաղագործ էր մեքենաշինական գործարանում:

Յուլիկը 11 տարեկան էր, երբ ընտանիքը Պլզեն տեղափոխվեց: Շուտով սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը: Այդ ժամանակ Չեխոսլովակիայում սով էր: Մթերքները անասելի թանկ էին:

Մի անգամ Պլզենի ծայրամասում կանգ առան հացով բարձած մի քանի զինվորական մեքենաներ: Սոված երեխաները մոտեցան բեռնատար ավտոմեքենային և ուզեցին մի հաց վերցնել: Բայց երեխաներին կրակոցներով դիմավորեցին:

Այս սարսափելի դեպքը Յուլիկն իր ամբողջ կյանքում չմոռացավ: Դեռ այն ժամանակ նա իր օրագրում գրեց. «Անիծում եմ նրանց, ովքեր մեզ պատերազմի մեջ քաշեցին»:

Յուլիկը մանկությունից սիրում էր գրականությունը և շատ էր կարդում: Հատուկ տետրում նա արտագրում էր սիրած գրվածքները և իր տպավորությունները դրանց մասին: Դա օգնում էր նրան գրվածքներն ավելի լավ հասկանալ և հիշել:

13 տարեկան հասակում նա ինքն սկսեց գրել: Դպրոցում նա հրատարակում էր «Ուրախ միտք» ձեռագիր ամսագիրը, որտեղ հանդես էր գալիս ոտանավորներով ու պատմվածքներով:

Տասնութ տարեկան հասակում Ֆուչիկը կոմունիստական պարտիայի անդամ էր արդեն:

1921 թվականին էր, երբ Ֆուչիկը 2 կրոն և 40 գելլեր գրպանում եկավ Պրագա և ընդունվեց հա-

մալսարանի փիլիսոփայական ֆակուլտետը: Առաջին օրը նա վաստակեց ևս հինգ կրոն, բայց հանդիպեց ավելի աղքատ մարդու և նրա հետ կիսեց իր ունեցած դրամը:

Ամբողջ իր ուսման ընթացքում Ֆուչիկը և՛ սովորում էր, և՛ աշխատում: Մի օր նա սևագործ բանվոր էր, մյուս օրը թատերական քննադատ, իսկ երրորդ օրը մի այլ գործի էր լինում: Եվ միշտ էլ հանույքով էր կատարում իր գործը: Նրա համար «սև» աշխատանք չկար: Նա խորապես հարգում էր ամեն մի աշխատանք:

Մտերիմներն ու ծանոթները Ֆուչիկին շատ էին սիրում ուրախ բնավորության, խելքի, մաքուր սրտի համար: Ամենից շատ նրան սիրում էին բանվորները: Նրանք ամուր կապված էին նրա հետ:

1929 թվականին կոմունիստական պարտիան Ֆուչիկին ուղարկեց Հյուսիսային Չեխիա, որպեսզի նա օգնի այնտեղի գործադուլավոր հանքափորներին:

### 3.

1930 թվականին Ֆուչիկը բանվորական պատգամավորության հետ պետք է ուղևորվեր Սովետական Միություն: Բայց ոստիկանական վարչությունը նրանց դիմումի վրա գրեց. «Արգելել հասարակական անվտանգության նպատակով»:

Պատգամավորները որոշեցին առանց թույլտվության գալ Սովետական Միություն:

Պատգամավորությունը կես տարի շրջեց մեր երկրում: Երբ Ֆուչիկը վերադարձավ Պրագա, նա իր հետ բերեց ճշմարտությունը սոցիալիստական Հայրենիքի մասին:

Նա շրջում էր ամբողջ Չեխոսլովակիայում և բոլորին պատմում սովետական մարդկանց մասին: Նա ամեն տեղ պաշտպանում էր Սովետական Միությունը, որովհետև իր աչքերով էր տեսել այն վիթխարի շինարարությունը, որ կատարվում էր մեզ մոտ: Մի տարվա մեջ Ֆուչիկը 370 զեկուցում կարդաց մեր Հայրենիքի մասին:

Ֆուչիկին շատ անգամ էին ձերբակալում իր համարձակ խոսքի համար: Մի անգամ էլ ոստիկանությունը բռնագրավեց մի համպրուկ, որի մեջ ապագա գրքի նյութերն էին: Ֆուչիկն իր այդ գիրքը Սովետական Միության մասին պետք է վերնագրեր՝ «Այն երկրում, ուր մեր վաղն արդեն երեկ է»: Սակայն բանտում Ֆուչիկը, հակառակ դեպս, գրեց այդ գիրքը: Հետո նա այդ գիրքը մեծ դժվարությամբ հրատարակեց:

1939 թվականին հիտլերականները գրավեցին Չեխոսլովակիան: Բոլոր չեխ կոմունիստները անցան ընդհատակ: Ֆուչիկն այդ ժամանակ պարտիայի Կենտկոմի անդամ էր: Ընդհատակում նա ղեկավարում էր բոլոր գաղտնի թերթերն ու ամսագրերը:

1942 թվականի ապրիլի 24-ին նրան ձերբակալեցին:

Հենց առաջին օրը Ֆուչիկին ծեծեցին այնքան, որ նա դրանից հետո մի քանի օր ուշաթափ ընկած էր: Բժիշկը նույնիսկ զեկուցագիր էր պատրաստել նրա մահվան մասին. բայց խիզախ մարտիկը ոտքի կանգնեց: Ծեծն ու խոշտանգումները նորից սկսվեցին: Ֆուչիկը լուռ էր: Նա չմատնեց ոչ մի ընկերոջ: Ֆաշիստները փորձեցին վախեցնել նրան, որ կնոջը կգնդակահարեն: Նրանք բարվոք կյանք էին խոստանում նրան, բայց Ֆուչիկը լուռ էր: Նա մահը անազնիվ կյանքից ավելի բարձր էր դասում, որովհետև գիտեր՝ ինչի համար էր պայքարում:

Ահա, թե ինչ է պատմում խաղաղության այդ մեծ մարտիկի մասին նրա կինը՝ Գուստինան, որը նույնպես ձերբակալված էր ու մի անգամ բանտում տեսել էր նրան:

«... Հանկարծ դռները բացվեցին ու երևաց Յուլիուս Ֆուչիկը: Նա բոբիկ էր: Նրա ոտքերի վրայով և բերանից արյուն էր հոսում: Ծեծից դեմքը դեղնականապույտ էր դարձել. մազերն ու մորուքը գզգզված էին: Նրա ետևից գալիս էր գեստապոյականը մահակը բարձր պահած: Նա Ֆուչիկին քշում էր անկյուն և խփելով ստիպում էր նրան դեմքով դեպի պատը դառնալ: Իսկ Ֆուչիկը, ասես հարվածներ չզգալով, գնում էր դանդաղ քայլերով: Նա կանգնեց պատի մոտ, դեմքով դեպի մեզ: Գլուխը բարձր նա նայում էր մեզ և ակամայից մեր գլուխներն էլ էին բարձրանում: Յուլիուս Ֆուչիկը կանգնած էր զինված գեստապոյականներով շրջապատված, ոչ թե որպես պարտված, անօգնական, ուժասպառ կալանավոր, այլ որպես հաղթող՝ պարտվողների դեմ: Որպես հաղթող, որը գիտե, որ իրեն ֆիզիկապես կարող են ոչնչացնել, բայց չեն կարող ոչնչացնել այն գաղափարը, որն իրականություն է դարձել աշխարհի մեկ վեցերորդ մասում. չեն կարող ոչնչացնել հավատը, որ հաղթանակը Սովետական Միության և մեր՝ սոցիալիզմի համար պայքարողներիս կողմն է»:

Իր գրքում Ֆուչիկը պատմում է նաև մյուս կոմունիստների մասին, որոնք մռայլ զնդաններում չեն կորցրել հոգու արիությունը և չնայած գազանային տանջանքներին, հավատարիմ են մնացել կոմունիզմի մեծ գործին:

Այսպես է ապրել իր հրաշալի կյանքը Յուլիուս Ֆուչիկը. հերոսաբար մինչև վերջին րոպեն:



Ահա, թե ինչու, խաղաղության համար մարտնչողների առաջին շարքում միշտ անվանում են նաև Յուլիուս Ֆուչիկին, որը ապրեց և մեռավ մարդկանց երջանկության համար: Նրա անունը կարդում են այնպես, ինչպես ընկած զինվորի անունը և մենք պատասխանում ենք:

— Հերոսաբար ընկավ խաղաղության համար մղվող պայքարում:





*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Հին է բարդի ծառը, շատ հին,
Բայց ծառից էլ ծեր էր տատին:

Հարյուր տարը գարուն տեսել,
Աչքերի լույսն էր պակասել.

Իսկ թոռները՝ թվով վաթսուն,
Այսպես էին տատին ասում.

— Անո՜ւշ տատի, մի՛ վախենա,
Մեր աչքերի լույսով գնա...

Գոհ էր տատը իր թոռներից,
Գոհ էր, միայն ոչ բոլորից:

Փոքրիկ Նունեն չարաճճի,
Տատիկի հետ մտնում վեճի,

Բարկացնում էր նրան իզուր,
Չես հասկանում՝ ի՞նչ էր ուզում...

Տատը նրան կանչեց մի օր.
— Նունե՛, մոտ եկ,— ասաց սիրով

Ասեղ թելիր, անուշ բալա՛,
Կոճակ կարեմ շորիդ վրա:

— Մեծ տատիկ ես, ասեղ թելել
Մինչև հիմա չե՞ս սովորել:

Ասաց Նունեն ու հեռացավ,
Բայց տատիկը չբարկացավ:

Ձեռքերի մեջ ասեղ ու թել,
Մտածում էր՝ ո՞նց խրատել.





Իսկ ես կասեմ մեր Նունիկին,
Չես հասկանում քո տատիկին:

Տատը գիտե ասեղ թելել,
Բայց լույսն աչքի քեզ է տվել:

Ասեղ թելել դու սովորիր,
Եվ լավ նայիր քո շորերին.

Կոճակ չունես, օձիքդ բաց,
Ժապավենդ ծուռտիկ կապած...

Դե՛, շուտ գնա, որպես պատիժ,
Ներողություն խնդրիր տատից...

Ու տատիկին պետք է ասել.
— Ինձ ոչ միայն թելել ասեղ,

Մինչև դառնամ տատիկ Նունե,
Սովորելու շատ բան ունեմ:

# ԻՆՉՊԵՍ ՊԱՊՍ ԳԱՅԼԻՆ ԲՌՆԵՑ

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Տաս-տասներկու տարեկան տղա էի։ Պապս՝ հովիվ Ղազարը կոլխոզի ոչխարն էր պահում մեր սարերում։

Մեր սարերը... Բարձր ու աննման են նրանք։ Ամառը խոտն այնտեղ հասնում է մինչև ձիու ծնկները։ Այնքա՜ն սառն են մեր սարերի ջրերը, որ մատդ մեջը դնես, մինչև տասը հաշվելը չես կարող պահել։

Ձորերում արդեն աշուն էր։ Ոչխարի հոտերը սարերից գյուղ իջեցնելու օրերը մոտենում էին։

Մի օր պապս ձի նստած եկավ տուն։ Մի երկու ժամ գյուղում մնալուց հետո նա նորից ձի նստեց՝ սար գնալու համար։ Բայց ես կախվեցի ձիու ասպանդակից։

— Ինձ էլ սարը տար, պապի՛,— խընդրեցի նրան։

— Դե՜, կմրսես, աշնան օրեր են, թոռնի՛կս, մնա տանը,— ասաց պապս։

Նա ինչ արեց-չարեց, ես ձիու ասպանդակը բաց չթողի։

— Չէ՛, պիտի ինձ տանես, պապի՛։

Միայն տատիս միջամտությունից հետո պապս համաձայնեց։ Նա իր հզոր թևերով ինձ պոկեց գետնից, դրեց ձիու թամբին ու գնացինք։ Իմ ուրախությանը չափ ու սահման չկար։

*
* *

Դեռ սարը չէինք հասել, երբ տեսանք, որ Ակների աղբյուրների գլխից մինչև Մեծ Իշխան սարը լեռները ծածկվել են մոխրագույն ամպերով։ Քանի գնում, այնքան օդը ցրտում էր։ Վարարակն գետն էլ ավելի էր կատաղել և նրա զվարթ ձայնը խլացել էր։

— Սարում ձյուն է գալիս,—անհանգիստ ասաց պապս ու արագացրեց ձիու ընթացքը,— եթե ձյուն լինի, ոչխարի բանը կըդժվարանա։

Հասանք սարը։ Պապս չէր սխալվել, սարում մեծ-մեծ փաթիլներով ձյուն էր գալիս։ Լսվում էին կոլխոզի հովիվների տագնապալի կանչերը.

— Ա՛յ տղա, Արո՜ւթ, ոչխարը քշի Գայլաձորը,— կանչում էր մեկը։

— Ինչո՞ւ են ոչխարը Գայլաձոր քըշում,— վրդովված ասաց պապս ու իմ գըլխավերևն հնչեց նրա կորովի ձայնը։— Հե՜յ, Արո՜ւթ, ոչխարը մականեցեք Ակների գըլխի՜ն։

Բայց արդեն ուշ էր։ Մութը վրա էր հասնում։ Ձյունն էլ իր միլիոնավոր սառը հատիկների հեղեղով վրա էր տալիս հոտերին։ Ոչխարները պարանոցները երկարած վազում էին դեպի ձորը, որտեղ շինված էին ոչխարի գոմերը՝ փարախները։

— Այստեղ լավ տեղ չի, Արո՛ւթ, գայլեր շատ կան, ոչխարը զուր եք բերել։

— Ոչի՜նչ, Ղազա՛ր քեռի, շների ահից գա՞յլ կմոտենա փարախներին,— հանգիստ ասաց Արութը։

— Է՜, լավ չեք արել։ Գայլն էլ խորամանկ գազան է, ձյունն ու մառախուղն էլ հակառակի պես նրա օգնականներն են։ Լավ կանեիք, որ ոչխարը թողնեիք Ակների աղբյուրների մոտ։

Հովիվների խոսակցություններն ինձ վրա անջնջելի տպավորություն էին թողնում։ Ես արդեն զղջացել էի, որ եկա սարը. բայց ամեն անգամ, երբ նայում էի պապիս վիթխարի հասակին ու Երկու մետրանոց հաստ գավազանին, սրտապնդվում էի։

Մութ ու ահավոր էր Գայլաձորը։ Հովիվները ոչխարի տաս հազարանոց հոտը մաս-մաս անելով քշեցին, լցրին ձորալանջին շինված փարախներն ու դռները փակեցին։ Պապս հովիվներին ցրեց փարախների վրա, իսկ ինքը ինձ վերցնելով Արութի հետ գնաց դեպի Ակների աղբյուրները։ Մի քանի հիվանդ ոչխար մնացել էին այնտեղ։ Կռվելով ձյունի ու քամու դեմ մենք հասանք Ակների աղբյուրներին։

Այդտեղ կար մի տնակ, որի մեջ կանգնելուց իմ գլուխը առաստաղին էր հասնում։ Եղ մնացած ոչխարները քշեցին, լըցրին այդ տնակը։

Պապս, ես և հովիվ Արութը տեղավոր-

վեցինք դրան մոտ։ Հոտի բոլոր շներն էլ մնացել էին ներքև՝ Գայլաձորում։ Ցածրիկ տնակի դրան գլխից մի անցք էր թողնված, որի միջով ես ազատ կարող էի ելնել ու իջնել։ Այդ անցքը օդափոխության համար էր։

Հոգնած ոչխարները խռնվել էին տնակում ու ծուլորեն որոճում էին։ Նրանց թաց մորթուց բարձրացող գոլորշին ճերմակ մըշուշով պատել էր առաստաղը։

Ես հետաքրքրությամբ ականջ էի դնում, թե ինչպես են ոչխարները որոճում։ Պապս ծխամորճ էր քաշում, իսկ Արութն արդեն քնել էր։ Տնակից ոչ հեռու լսվեց մի բարակ ոռնոց.

— Ո՜ւ, ո՜ւ, ո՜ւ...



Նրան անմիջապես ձայնակցեցին տասնհինգ ուրիշ ոռնոցներ։ Ողջ մարմնովս սարսուռ անցավ։ Վախեցած նայեցի կտուրի անցքին։ «Դե, իհարկե, գայլերն այնտեղով կարող են ներս մտնել» մտածեցի ես։

— Պապի՛, կտուրի անցքն ինչո՞ւ չեք փակել,— հարցրի ես։

— Որ փակենք ոչխարները ծանր օդից կսատկեն, չե՞ս տեսնում կտուրը ինչքան ցածր է,— պատասխանեց նա։

Գայլերի ոռնոցը լսվեց ավելի մոտից։ Պապս սրվեց։

— Արո՛ւթ, վեր կաց, գայլերը փարախին են մոտեցել,— գլուխը բարձրացնելով ու Արութին բոթելով ասաց պապս։

— Դե՜, ի՞նչ անենք, հո չեն գալու դուռը բաց անեն,— ասաց քնատ Արութը,— մենք փարախում, նրանք դրսում, մեզ ի՞նչ կարող են անել։

Պապս ծծեց ծխամորճի ծուխն ու թիկնելով պատին, լռեց։ Իմ քունը բոլորովին փախավ, դե ինչ քուն կմոտենար ինձ այդ զարհուրելի գիշերը։

Ականջ էի դնում գայլերի ոռնոցին։ Նրանց ձայներից կարելի էր որոշել, որ մի քանի տասնյակ են, գուցե հարյուրից ավելի։ Սիրտ չէին անում իջնել Գայլաձորը։ Կոլխոզի հոտի շները շատ էին, այն էլ ինչպիսի շներ, ամեն մեկը տաս գայլ կըխեղդեր։

Գիշերվա կեսն էր։ Օդանցքից թույլ կաթնագույն լույս էր կաթում ցած։ Ես շունչս պահած նայում էի այդ անցքին։ Մեկ էլ տեսա, որ անցքը մերթ մթնում է, մերթ պարզվում։ Հետո ատամների ժնգժնգոց լսեցի, հետո էլ կտրին իրարանցում։ Զարհուրած կպել էի պապիս կողքին, բայց սիրտ չէի անում բան ասել նրան, վախենում էի, որ վրաս կծիծաղի։

Բայց ոչ քունս էր տանում, ոչ էլ վախս էր անցնում։ Վերջապես չդիմացա ու պապիս ականջին շշնջացի.

— Պապի՛, գայլերը եկել, խռնվել են կտուրին,— ու ձեռքս մեկնեցի դեպի օդանցքը։

Տնակի կտուրի ցածր լինելու պատճառով պապս շարժվում էր չոքեչոք։ Նա այդպես մոտեցավ օդանցքին, ուշադիր վեր նայեց ու սպասեց։

Ես շունչս պահած նայում էի պապիս։

Հանկարծ գայլերից մեկն օդանցքով իր երկար պոչը կախեց ցած։ Պապս իսկույն գլխից հանեց ոչխարենի փափախն ու դրեց գայլի պոչի տակ։ Գայլը պոչով շոշափեց ոչխարենին ու ետևի ոտքերից մեկը կախեց, ըստ երևույթին կարծելով, թե իր պոչը քսվում է ոչխարի մեջքին։ Հենց որ գայլը ոտքը կախեց, պապս ամուր բռնեց։

— Արո՛ւթ, գայլ եմ բռնել,— գոչեց նա։

Արութը տեղում ծառս եղավ։ Իմ սիրտը սկսեց ավելի արագ բաբախել։

— Ո՞ւր է, ի՞նչ գայլ է,— տագնապահար հարցրեց Արութը։

— Դանակդ հանիր,— կարգադրեց պապս։

Արութը հանեց դանակը։

— Դե, հիմա ճղիր գայլի ոտքը՝ վերից վար,— ավելացրեց նա։

Արութը սուր դանակով ճղեց գայլի թաթը։

— Հիմա մի հաստ մահակ անցկացրու ճեղքով,— նորից ասաց պապս։

Գայլի ոտքի ճեղքով Արութն անցկացրեց իր հաստ մահակն ու բաց թողեց։ Գայլը կաղկանձելով վեր թռավ, բայց… երկար մահակը դեմ առավ օղանցքի պատերին։

— Դե հիմա վեր-վեր թռի, անիծված անասուն, էլ քեզ փրկություն չկա,— ասաց պապս ու թոկով մահակի ծայրերն ամրացրեց ծածկի գերաններին։ Մի ոտը կապած գայլը մնաց տնակի կտրին։ Նա ոռնում էր, կաղկանձում, հողը ճանկռտում. բայց իզուր։

* * *

Սկզբում ինձ թվաց, թե այդ ամենը երազ է, անգամ կծեցի լեզուս, ինչ երազ, ահա ես պապիս մոտ եմ։ Նույնիսկ ձեռք եմ տալիս գայլի ոտքին, որից արյուն է կաթում։ Գայլը վնգստում է, աղեկտուր ոռնում, առջևի թաթերով ճանկռտում հողը, բայց իզուր, իզուր։ Նրա ոտքն ամուր կապված է և նա չի կարող ազատվել կապանքից։

Ողջ գիշերը պապս իր հովվական կյանքից զանազան դեպքեր էր պատմում։

Ոչխարները գայլի հոտն առել էին և անհանգիստ էին։ Լուսացավ։

— Դե՛, Արո՛ւթ, վեր կաց, գնանք գայլին բռնենք,— ասաց պապս։

Նրանք վերցրին մի պարան և երկու հաստ ու երկար մահակ։ Պարանը մահակների գլխին կապելով օղ շինեցին։ Դուրս եկանք։ Ինչ թաքցնեմ, ես վախենում էի. չինի՞ թե գայլը ազատվի ու…

Բայց ոչ։ Պապս ու Արութը մահակների օղակը մոտեցրին գայլին ու հագցրին նրա գլխին։ Գաղազած գայլը ատամները ժնգժնգացնում էր։

— Անցյալ տարի մեր կոլխոզի ոչխարներից մեկին գայլը կերավ։ Այ, գող գազանին այսպես են թակարդը գցում հա՛, դե հիմա խեղդվիր,— գոչում էր պապս ու ծիծաղում։

Գայլը կատաղած, արնակալած աչքերով նայում էր մեզ ու նորից ատամները ժընգժընգացնում։

Պապս ու Արութը նրա կոկորդի օղակը սեղմեցին։ Պապս երկու մահակները բռնեց, իսկ Արութը գնաց փարախ ու ներքևից արձակեց գայլի ոտքի կապը։ Գայլը ծառս եղավ, որ հարձակվի պապիս վրա, բայց մահակները դեմ էին առել նրա վզին, օղակն էլ խեղդում էր։

— Դե՛, դե՛, խելոք կաց, գազա՛ն։ Էլ ո՞ւր կարող ես փախչել։

Ոչխարը գյուղ իջեցրինք։ Պապս գայլին քարշ էր տալիս ետևից։ Գայլաձորում հասանք ոչխարի հիմնական հոտերին։ Հովիվները զարմացած նայում էին ողջ-ողջ բռնած գայլին։ Շները ծառս էին լինում նրա չորս կողմը, ուզում էին գզել, գզգզել գազանին, բայց պապս սաստում էր նրանց։

Կոլխոզի ոչխարն անվնաս բերինք գյուղ։ Ամբողջ գյուղը թափվել էր կենդանի բռնած գայլին տեսնելու։ Թակարդն ընկած գազանը պոչը սեղմել էր ետևի ոտքերի արանքում ու անզորությունից կատաղած միայն ատամներն էր չխչխկացնում։

— Դե, եկեք տեսե՛ք, ա՛յ մարդիկ, ահա հանրային հոտի թըշնամին. ողջ-ողջ բռնեցինք։ Դատաստանն էլ դուք արեք,— հըպարտ ասում էր պապս ու ծիծաղում։



# ԱԿՈՒՄԲԱՎԱՐ ԾԱՎՈՅԻ ՁՐՈՒՅՑԸ

Նկ. Մ. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Պիոներներ՝ Թաժդինը և Սեդինը գյուղի ակումբի պատի թերթի համար ոչխարաբուծական ֆերմայի մասին հոդվածներ պետք է գրեին:

Սեդինը փոքր էր: Նա շատ անհանգիստ և անհամբեր տղա էր: Նա շուտ գրեց վերջացրեց իր հոդվածը, իսկ Թաժդինը՝ ուշ: Բայց հակառակ սպասածին՝ Թաժդինի գրածըն ավելի փոքր դուրս եկավ, քան ընկերոջը: Այդ տարբերությունը տեսավ Սեդինը և գոհ մնաց: Հետո ընկերները ակումբավար Ծավոյից խնդրեցին, որ իրենց գրածները կարդա, հայտնի իր կարծիքը:

Ծավոն նախ Սեդինի հոդվածը կարդաց: Նա գրել էր հովիվների, ոչխարների փարա-



խի, հովվական շների, գառների և ուրիշ բաների մասին:

Թաժդինի հոդվածն էլ կարդաց: Նա էլ գրել էր, թե ինչպես կոմերիտական խիզախ հովիվ Շերոն մի մութ գիշեր կոլխոզի ոչխարների հոտն ազատել էր գայլերի մեծ ոհմակից:

Երբ Ծավոն կարդաց վերջացրեց, անմիջապես իր կարծիքը չհայտնեց, այլ այսպիսի մի պատմություն սկսեց.

— Տարիներ առաջ,— ասաց նա,— մի անգամ ամռանը մեր գյուղի պիոներների հետ գնացի կոլխոզի արտերը հասկ հավաքելու: Մեզ հետ էր նաև հորեղբորս աղջիկը՝ Զոզանը: Նա երկու տարով ինձնից մեծ էր: Ճանապարհին, ես որոշեցի հասկ հավաքելիս՝ նրա հետ մրցել, որպեսզի կոլխոզի բրիգադավարը, մերոնք՝ հորեղբայրս ու հորեղբորս կինը, հայրս ու մայրս ինձ գովեն: Տեղ հասնելուն պես սկսեցինք հավաքել: Ամեն րոպե նայում էի Զոզանի կողմը: Նրա գոգնոցը դեռ չէր լցվել, իսկ իմն արդեն լցվելու վրա էր: Ուրախացա: Բավական ժամանակ անցնելուց հետո Զոզանն ինձ նայեց, բերնե-բերան լցված պարկս տեսավ և ասաց:

— Վա՜յ, Ծավո՛ ջան, ինչքա՜ն շատ ես հավաքել, բեր մի տեսնեմ:

Ես մոտեցա և հպարտ-հպարտ ցույց տվեցի: Նա տեսավ հավաքածս, շուռ ու մուռ տվեց, ապա ափսոսանքով ասաց.

— Ծավո՛ ջան, սրանք հո հասկ չեն, ցողուններ են:

Ես շփոթվեցի և ամեն ինչ միայն նոր հասկացա: Հավաքած հասկերից ավելի շատ էին ցողունները: Այս անգամ ստիպված դրանց միջից սկսեցի հասկերը ջոկել և նոր միայն նկատեցի, որ Զոզանի հավաքածը, չնայած քիչ էր երևում, բայց իմից ավելի շատ էր և մաքուր: Ես այդ պահին շատ տխրեցի. բայց հետո այդ դեպքը ինձ համար մեծ դաս եղավ: Ես հասկացա, թե ինչպես կարելի է ավելի արդյունավետ սովորել ու աշխատել:

— Այդ բոլորը լավ, ընկե՛ր Ծավո, բայց դուք մեր հոդվածների մասին խոսեք,— ասաց անհանգստացած Սեդինը:

— Այո,— ասաց Ծավոն,— իմ խոսքը հենց ձեր հոդվածների մասին է: Ա՛յ, Սեդին, դու գրել ես շատ երկար և շատ բաների մասին, իսկ Թաժդինի գրածը սեղմ է, բո-

վանդակալից և մի խնդրի մասին: Երբ կարդացի քո գրածը, չգիտեմ թե ինչու, իսկույն հիշեցի իմ ցողուններով լցված պարկը, իսկ երբ կարդացի Թաժդինի գրածը, մտաբերեցի այդ օրը Զոզանի կատարած աշխատանքը:

Դե՛, հիմա դու՛ ասացեք, թե ո՞ւմ հոդվածն է հարմար պատի թերթի համար:

Սեդիկը նորից նայեց ընկերոջ հոդվածին և դժգոհեց իր գրածից: Նա ուզում էր, որ իր գրածն էլ Թաժդինի գրածի նման լիներ:

# „ՎԱՅՐ ԸՆԿՆՈՂ ԱՍՏՂԵՐ“

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ

Պարզ գիշերը աստղազարդ երկնքին նայելիս մենք մի հետաքրքրական երևույթ ենք տեսնում: Երկնակամարի տարբեր կետերից աստղերը պոկվում են և մի ակնթարթ փայլատակելուց հետո մարում մի այլ կետում: Այս երևույթի պատճառը չիմացողները կարծում են, թե իրոք աստղերն են վայր ընկնում: Մեր նախնիներն այդ անհասկանալի երևույթը գերբնական ուժով էին փորձում բացատրել: Նրանք կարծում էին, թե ամեն մի մարդ երկնքում իր աստղն ունի, որը հանգչում է նրա մեռնելու ժամանակ:

Գիտնականներն ապացուցում են, որ «վայր ընկնող աստղերն» իսկական աստղեր չեն. դրանք միջաստղային տարածության մեջ գտնվող շատ փոքրիկ, խավար տիեզերական մարմիններ են: Երկրի ձգողական ուժի շնորհիվ նրանք մեծ արագությամբ (մի վայրկյանում 10—100 կիլոմետր) թռչում են մեր մթնոլորտի մեջ ու շիկանալով մի ակնթարթում բոցավառվում: Գիտնականներն այդ մարմիններն անվանում են մետեորներ, որը նշանակում է երևույթ:

Մետեորական փոքրիկ մարմինները, որոնց կշիռը ընդհանրապես մեկական գրամից չի անցնում, երկրագնդի մակերևույթից մոտ 150 կիլոմետր բարձրության վրա հանդիպելով օդի դիմադրությանը խիստ տաքանում են և 80—130 կիլոմետր բարձրության վրա փայլատակում:

Պարզ գիշերին մեկ ժամում, կարելի է դիտել մոտավորապես 6 «վայր ընկնող աստղ»: Երբեմն երևում են շատ պայծառ ու մի քանի վայրկյան փայլատակող «վայր ընկնող աստղերը», որոնք շրջակա տարածությունը լիալուսնի չափ լուսավորում են: Այսպիսի «վայր ընկնող աստղերը» կոչվում են բոլիդներ: Բոլիդների կշիռն ավելի մեծ է լինում: Նրանց մի մասն օդում փայլատակելու պահին ուժեղ ձայն արձակելով պայթում է, մանր բեկորների վերածվում: Կան նաև բազմաթիվ շատ մանր խավար մարմիններ, որոնց հնարավոր է տեսնել միայն հեռադիտակներով: Դրանք տելեսկոպիկ մետեորներն են:

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Մետեորական նյութը միջաստղային տարածության մեջ միատեսակ խտություն չունի: Որոշ ուղղություններում կազմվում են մետեորական հատիկների խմբեր: Երբ երկրագունդը միջմոլորակային տարածության մեջ հանդիպում է մետեորական հատիկների խմբի, երկնակամարի որոշ կետերից թափվում են մեծ թվով «վայր ընկնող աստղեր», որոնց անվանում են մետեորական հոսքեր: Մինչև հիմա հայտնի են մի քանի հարյուր մետեորական հոսք: Նշանավոր է Պերսեյի մետեորական հոսքը,



որը տեղի է ունենում ամեն տարի օգոստոսի 10-ից մինչև 14-ը: Այս մետեորական հոսքը ավելի քան 1000 տարի է, ինչ դիտվում է: Նշանավոր մետեորական հոսք է տեղի ունենում նաև նոյեմբերի 27-ին: Պարզված է, որ մի շարք մետեորական հոսքեր առաջացել են գիսավոր աստղերի քայքայման հետևանքով: Երբեմն այնպիսի ուժեղ մետեորական հոսքեր են տեղի ունենում, որ «աստղային անձևի» տպավորություն են թողնում:

Հորդ «աստղային անձրև» է տեղացել 1933 թվի նոյեմբերի 9-ին և 1946 թվին: «Աստղային անձրևի» երևույթը տեղի է ունենում երկրագնդի և գիսավոր աստղերի հանդիպման ժամանակ, կամ, երբ երկրագունդը անցնում է գիսավորի քայքայման հետևանքով առաջացած մանր փոշիներից կուտակված միջավայրով: Օրինակ՝ հայտնի է, որ Բիելա անունով գիսավոր աստղը 1872 թվականին պետք է բավականաչափ մոտենար երկրագնդին, սակայն գիսավորն այդ թվականին չերևաց և դրա փոխարեն նույն թվականի նոյեմբերի 27-ին «աստղային անձրև» տեղաց:

1922 թվականի ապրիլի 19-ից 22-ին Քնարի համաստեղության ուղղությամբ նույնպես «աստղային անձրև» տեղաց: Հաշվել են, որ այդ երևույթը պետք է կրկնվի 1952 թվի ապրիլ ամսին:

3700 տարի առաջ Չինաստանում «աստղային անձրև» են դիտել: Այդ «անձրևի» հետքերը պահպանվում են մինչև հիմա և կոչվում են լեոնիդներ:

Ամեն տարի երկրագնդի մակերևույթի վրա թափվող «վայր ընկնող աստղերի» զանգվածը կազմում է մոտավորապես երկու հազար տոննա: «Վայր ընկնող աստղերի» երևույթը ոչ միայն գիշերն է տեղի ունենում, այլև ցերեկը, բայց արևի լույսը խանգարում է տեսնել: Եղել են դեպքեր, որ շատ պայծառ բոլիդներ ցերեկն էլ են երևացել:

«Վայր ընկնող աստղերը» թափվում են նաև արեգակի, աստղերի, մյուս մոլորակների ու նրանց արբանյակների վրա:




*Ա. ԱԹԱՆԱՍՅԱՆ*

Սովետական գիտնականները՝ ՍՍՌՄ-ի ապակու ինստիտուտի աշխատակիցներ՝ Մ. Գ. Չերնյակը, Մ. Ս. Ասլանովան, Գ. Մ. Խոլմոգորովան և ուրիշները մշակել են ապակուց թելեր ստանալու եղանակը, որի համար նրանք Ստալինյան մրցանակ են ստացել: Այդ եղանակը հետևյալն է:

Սովորական ապակուց 18—20 միլիմետր տրամագիծ ունեցող գնդիկներ են պատրաստում: Այդ գնդիկներն աստիճանաբար տեղավորում են էլեկտրական հատուկ վառարանի մեջ: Այստեղ գնդիկները հալվելով՝ արծաթափայլ շիթերի ձևով դուրս են գալիս վառարանի հատակի մանրիկ անցքերից:

Այդ շիթերն իսկույն բռնվում են արագ պտտվող գլանի կողմից ու ձգվում դառնում են աչքով համարյա անտեսանելի, մարդու մազից 50 անգամ բարակ և արհեստական մետաքսի պես փայլուն թելեր: Տասը գրամանոց ապակե գնդիկից ստացվում է 160 կիլոմետր երկարությամբ թել: Ապակե թելեր կարող են ստացվել ցանկացած երկարությամբ: Որքան բարակ է լինում ապակե թելը, այնքան ավելի ճկուն ու դիմացկուն է:

Այդպիսի թելերից պատրաստում են քատերական վարագույրներ, դեկորներ, զգեստներ, կանացի գուլպաներ, նասկիներ:

Ապակե թելերի մակերեսը հարթ է, այդ պատճառով էլ նրանցից պատրաստած գործվածքները լվանալիս հեշտությամբ են մաքրվում: Այդ թելերից պատրաստված գործվածքները ո՛չ փտում են, ո՛չ այրվում: Դրանք լայնորեն կիրառվում են արդյունաբերության մեջ, ուրիշ քիմիական լուծույթներ՝ ալկալիներ, թթուներ քամելու համար: Ապակե թելերից պատրաստում են մեկուսիչ ժապավեններ և ամուր պարաններ: Ապակե ավելի հաստ թելերից պատրաստում են բամբակ, որը ջերմության և ձայնի վատ հաղորդիչ է:

Ապակե բամբակը ջերմությունը ասբեստից 3,5 անգամ ավելի լավ է պահում, փայտից՝ 7 անգամ, աղյուսե շարվածքից՝ 20 անգամ, իսկ բետոնից՝ 40 անգամ:

Գոյություն ունի նաև ապակե բամբակ, որը ձայնի լավ մեկուսիչ է և հրադիմացկուն:




Նկ. Հ. ՔԱՅԱԿՅԱՆԻ

Հյուսիսային Ղրիմի ջրանցքի կառուցումը դեռ չէր սկսվել, երբ բազմաթիվ գիտնականներ արդեն հետազոտում էին այնտեղի տափաստանները: Նրանք ուսումնասիրում էին հողի կազմությունը, ուզում էին իմանալ, թե ինչ բույսեր են աճում այնտեղ և ինչ բույսեր կարելի է աճեցնել հետագայում: Նրանք տեղեկություններ էին հավաքում նաև օդի ջերմության փոփոխությունների, քամիների, մթնոլորտային տեղումների մասին:

Ուսումնասիրություններ էին կատարում նաև կենդանաբանները: Նրանք էլ պետք է իմանային, թե Ղրիմի այդ շրջանում ինչ թռչուններ կան, որ կարող են օգտակար լինել բույսերի վնասատուների դեմ պայքարելու համար: Անհրաժեշտ էր նաև միջոցներ գտնել այդ թռչունների քանակը բազմապատկելու համար:

Գիտնականները շատ աշխատանք կատարեցին և գտան, որ ապագա ջրանցքի շրջանում այդպիսի օգտակար թռչուններ կան:

Սև ծովի ափերին և Սիվաշի անհամար կղզյակների վրա բազմաթիվ տեսակի ճայեր են ապրում: Նրանք թռչում են դեպի ծովի հեռավոր տարածությունները ձուկ որսալու:

Մինչև այժմ ասում էին, որ բոլոր այդ թռչունները միմիայն ձուկ են ուտում: Բայց Հյուսիսային Ղրիմի ջրանցքի շինարարության շրջանը եկած կենդանաբանները հայտնաբերեցին ճայի մի տեսակ, որը ձկնով չի սնվում: Այդ թռչունը կոչվում է ֆրֆրջան ճայ: Նրան անվանում են նաև արծաթափայլ ճայ:

Գիտնականները պարզեցին, որ այդ զարմանալի ճայը բուն է դնում Կերկինետի նեղուցի և Սիվաշի կղզիներում: Նա ոչ թե սովորական ճայերի նման սնունդ գտնելու համար հասնում է ծովի հեռուները, այլ Ղրիմի կոլխոզների դաշտերն է թռչում:

— Ճայ և դաշտե՞րը,— գուցե զարմանաք դուք:

— Այո՛, այդ ճայը թռչում է դեպի դաշտերը, որտեղ ցորեն, գարի և այլ հացահատիկային բույսեր են աճում:

Ինչո՞վ է օգտակար այդ թռչունը:

Ամեն մի այդպիսի ճայը օրեկան միջին հաշվով ոչնչացնում է երկու առնետ, հինգ դաշտային մուկ և մեծ քանակությամբ միջատներ:

Սննդի ետևից ընկնելով, այդ ճայերը թռչում հասնում են Ղրիմի թերակղզու խորքերը՝ մինչև հիսուն կիլոմետր:

Սովետական Միության Գիտությունների Ակադեմիայի Ղրիմի ֆիլիալի կենդանաբանական սեկտորի աշխատակիցները հաշվել են, որ հետազոտված երեք շրջաններում՝ Կրասնոպերեկոպում, Ռազդոլնենսկում և Պրիմորսկիում ապրում են հինգ հազարից ոչ պակաս հասակավոր ճայեր: Ուտելով գյուղատնտեսության վնասատուներին, նրանք ամեն տարի փրկում են կոլխոզների հսկայական բերքը: Նրանց տված այդ օգուտը կազմում է՝ տասներկու հազար տոննա հացահատիկ, տասը հազար տոննա կոշտ կեր և գյուղատնտեսության շատ ուրիշ մթերքներ:



Սովետական գիտնականների այդ հայտնագործությունը մեծ նշանակություն ունի ապագայի համար, երբ Հյուսիսային Ղրիմի ջրանցքի ջրերը կոռոգեն տափաստանները և կդարձնեն մրգառատ այգիների, ծով արտերի, ընդարձակ բանջարանոցների ու խաղողի պլանտացիաների վայր:

Այժմ գյուղատնտեսության համար վերին աստիճանի օգտակար ֆրֆրջան ճայը հայտարարված է արգելափակոցային և պաշտպանվում է օրենքով:

Շատ հավանական է, որ երբ ջրանցքը կառուցվի և նրա ափերը ծածկվեն փարթամ այգիներով ու անտառներով, երբ Ղրիմի տափաստանները ջրառատ դառնան, այնտեղ կգան նոր օգտակար թռչուններ:

# ԱՄԵՆԱԵՐԻՏԱՍԱՐԴ ՎԱՐՊԵՏԸ

1944 թվականի նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին Թբիլիսիում անցկացվեց շախմատի ռեսպուբլիկական չեմպիոնատ, որին մասնակցեցի նաև ես։

Այդ տարիներին իմ ուշադրությունը գրավեց 15-ամյա մի նիհար, թխադեմ պատանի, որը հաջողությամբ մարտնչում էր փորձված շախմատիստների



հետ։ Այդ պատանին Տիգրան Պետրոսյանն էր։ Արդեն այդ ժամանակ Պետրոսյանի մասին շատ էին խոսում շախմատասեր հասարակության շրջանում։ Շատերը համոզված էին, որ նա մեծ ապագա խոստացող շախմատիստ է։ Այդ տուրնիրում Պետրոսյանը գրավեց միջին տեղերից մեկը։ Հետևյալ մրցության ժամանակ, Թբիլիսիի շախմատային առաջնության չեմպիոնատում, Պետրոսյանը գրավում է երկրորդ տեղը։ Այնուհետև տարեցտարի Պետրոսյանը ձեռք բերեց սպորտային նորանոր հաջողություններ։

1946 թվականի սկզբներին Պետրոսյանը մասնակցեց Վրաստանի ռեսպուբլիկական չեմպիոնատին և գրավեց առաջին տեղը։ Նույն թվին նա տեղափոխվեց Հայաստան և մասնակցելով Հայաստանի ռեսպուբլիկական չեմպիոնատին, նույնպես գրավեց առաջին տեղը։

Ես, որ շախմատի երկար տարիների փորձ ունեմ, նույն 1946 թվականին հանդիպում ունեցա տասնյոթամյա Պետրոսյանի հետ։ Մեր մատչում 8:6 հաշվով հաղթող դուրս եկավ պատանի շախմատիստը։ Նրա այդ հաղթանակը ցույց տվեց, որ Պետրոսյանը 17-ամյա հասակում արդեն խաղում է վարպետի ուժով։ Եվ իրոք, հաջորդ՝ 1947 թվականին, Մոսկվայում, մասնակցելով ՍՍՌՄ առաջնության կիսաֆինալի խաղերին, նա հավաքեց համապատասխան միավորներ և ստացավ շախմատի գծով Սովետական Միության սպորտի վարպետի կոչում։ 1947 թվականին նա գրավեց առաջին տեղը և պատանիների գծով Սովետական Միության չեմպիոնի կոչում ստացավ։

1949 թվականից սկսած տաղանդավոր պատանին մեծ հաջողություններով հանդես է գալիս մեծահասակների համամիութենական մրցություններում։

Հատկապես մեծ հաջողությունների հասավ նա այս տարի։ Այս տարվա մայիս-հունիս ամիսներին նա ՍՍՌՄ առաջնության Սվերդլովսկի կիսաֆինալում գրավեց առաջին տեղը, առաջ ընկնելով գրոսմայստեր Բոլեսլավսկուց և նշանավոր վարպետներ՝ Գելլերից, Ավերբախից և ուրիշներից և իրավունք ստացավ մասնակցելու ՍՍՌՄ առաջնության ֆինալային խաղերին։ Այնուհետև նա առաջին տեղն է գրավում Մոսկվայի բլից-տուրնիրում, որին մասնակցում էին գրոսմայստերներ՝ Բրոնշտեյնը, Ֆլորը և ուրիշները։ Մոսկվայի 1951 թվի չեմպիոնատում նա նույնպես փայլուն հաղթանակ տարավ, գրավելով առաջին տեղը և ստանալով Մոսկվայի չեմպիոնի պատվավոր կոչումը։

Երիտասարդ վարպետի այս նշանավոր հաղթանակները վկայում են նրա մեծ շնորհքի մասին։ Նա շախմատի ամենաերիտասարդ վարպետն է և բոլոր տվյալներն ունի ավելի մեծ հաջողությունների համար։

Հետզհետե կատարելագործվում է Պետրոսյանի խաղի ոճը։ Եթե մինչև 1946—1949 թվականները նա խաղում էր համեմատաբար հանգիստ, առանց ռիսկի, ապա 1950—51 թվականներին նրա ոճը ակտիվանում է, դառնում բազմակողմանի։ Նա նույնպիսի հաջողությամբ խաղում է հանգիստ, դիրքային պարտիաներ, որքան և համարձակ կոմբինացիաներ, բարդ և սուր պայքար պահանջող պարտիաներ։

Բերենք երկու վերջնախաղ, որոնք կբնութագրեն մեր երիտասարդ, տաղանդավոր վարպետի ստեղծագործությունը։

ԹԲԻԼԻՍԻ 1949 թ.

Համամիութենական առաջնության կիսաֆինալ

Պոգրեբիսսկի



Պետրոսյան

*Քայլը սպիտակներինն է։ Սև Արքայի ոչ հարմար դրությունը հնարավորություն է տալիս սպիտակներին անընդհատ գրոհելու։*

| | | |
|---|---|---|
| | 22. f4—f5+! | Փg4:f5 |
| **Եթե** | 22. ...Թ:f5 | *ապա* 23. Թb1! |
| | 23. Ձe4—d6! | Փf5—g4 |
| | 24. Փg2—e4+ | Աg6—h5 |
| | 25. Նf1—f4! | f6—f5 |
| **Եթե** | 25... Փ:d1, | *ապա* 26. Նh4+ Աg5, |
| | 26. Նf4:g4! | 27 Փc1× |
| | 27. Թd1—d2 | f5:g4 |
| | 28. Աg1—g2 | Նf8—h8 |

*Սևերը հանձնվեցին։*

*Քայլը սպիտակներինն է։ Սպիտակները եռանդուն խաղով ջախջախում են սևերի Արքայի դիրքերը և հաղթանակի են հասնում։*

| | |
|---|---|
| 11. Փf1—d3 | h7—h6 |
| 12. Փg5:f6 | g7:f6 |
| 13. g2—g4! | f6:e5 |
| 14. f4:e5 | Փd6—e7 |
| 15. 0—0—0! | Փe7—g5 |
| 16. g4:h5 | Աg8—h8 |
| 17. Թc2—f2 | f7—f5 |
| 18. h2—h4 | Փg5—e7 |
| 19. Թf2—f4 | |

*Սևերը հանձնվում են։*

ՄՈՍԿՎԱ 1950 թ.

Համամիութենական առաջնության ֆինալ։

Տոլուշ



Պետրոսյան

Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

*(Շախմատի միջազգային վարպետ)*

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

Ջոկատի հավաքույթից հետո ուրախ ժամանց կազմակերպեցին։

Արամը առաջարկեց այսպիսի մի խնդիր։



— Երկու ապրանքատար գնացք տարբեր քաղաքներից իրար դեմ հանդիման են գալիս։ Ամեն մեկն ունի 20 վագոն։ Ճանապարհին կա միայն մի փակուղի, որտեղ կարող են տեղավորվել շոգեքարշը և 19 վագոնը։

Ինչպիսի տեղաշարժեր պետք է կատարել, որ գնացքները 10 րոպե հետո շարունակեն իրենց ճանապարհը։

— Ինչո՞ւ պետք է անպայման 10 րոպե հետո շարունակեն իրենց ճանապարհը,— հարցրեց Աստղիկը։

— Խելոք մեքենավարը իրավունք չունի երկար մտածելու։ Նա պետք է արագ լուծի տրված խնդիրը,— պատասխանեց Արամը։

— Վագոնները կարելի՞ է արձակել, կամ գնացքների շոգեքարշերը կարո՞ղ են մեկը մյուսին օգնության գալ, վագոնները փակուղի տանելու կամ այնտեղից դուրս բերելու ժամանակ,— հարց տվեց Էմման։

Արամը պատասխանեց.

— Այո, մեկը մյուսին օգնել կարող են՝ չփոխելով վագոնները և իրենց ուղղությունը:

Պիոներները սկսեցին թղթերի վրա նկարել երկաթուղագիծը և խնդիրը լուծել: Դուք էլ փորձեցեք:

* * *

Ջոկատի հավաքույթին ներկա էր նաև Տիգրանի ընկերը՝ Սուրիկը, որն աշխատում էր մանկական երկաթուղում: Նա էլ այսպիսի մի խնդիր առաջարկեց.

—Շոգեքարշը Երևանից մեկնում է Թբիլիսի: Կայարաններից մեկում կա մի դատարկ փակուղի: Նրա երկու կողմերում գտնվում են մի ապրանքատար և մի մարդատար վագոն: Կայարանապետը կարգադրում է մեքենավարին, որ այդ վագոնների տեղերը փոխի: Մեքենավարը կատարում է կայարանապետի կարգադրությունը և շարունակում իր ճանապարհը:

Արամն անմիջապես հարցրեց.

— Շոգեքարշը կամ երկու վագոնը միասին կարո՞ղ են տեղավորվել փակուղում:

— Ոչ, այդտեղ կարող է տեղավորվել վագոններից մեկն ու մեկը: Շոգեմեքենան նույնպես չի կարող,— պատասխանեց Սուրիկը:

Արամը նորից հարցրեց.

— Իսկ շոգեմեքենան անպայման ուղիղ դիրքով է շարունակելու իր ճանապարհը, թե՞ պետք է փոխի դիրքը:

— Ոչ, շոգեքարշն ինչպես դուրս է եկել, այնպես էլ պետք է շարունակի իր ճանապարհը:

Արամն արագ լուծեց առաջադրված խնդիրը: Այժմ էլ դուք լուծեցեք:

*ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ




Журнал «ПИОНЕР» на армянском языке. Адрес редакции: Ереван, Маркса, 21.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 06071, Պատվեր 682. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 12/XII—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.*




## Ս. Մ. ԿԻՐՈՎ



Տասնհինգամյա Սերգեյ Միրոնովիչ Կիրովը (Կոստրիկով) 1901 թվականին սովորում էր Կազանի տեխնիկական ուսումնարանում: Ընդունակ, աչքաբաց պատանին շատ շուտով գրավեց բոլորի ուշադրությունը:

Մի անգամ Սերգեյը ուսումնարանում ծանոթացավ մի ծեր բանվորի հետ: Ծերունին սկսեց գանգատվել իր կյանքից: Նա պատմեց, որ իր ապրած տան գերանները փտել են, որ տունը կարող է փուլ գալ և ինքը ոչինչ չի կարողանում անել, որ կյանքն անտանելի դժվար է:

— Դե հիմա արի ու հասկացիր, թե ո՞վ է մեղավոր,— ասաց ծերունին դժգոհ:



— Ցարն է մեղավոր,— ասաց Սերգեյն առանց երկար մտածելու:

Այդպես դեռ վաղ հասակում Կիրովը հասկացել էր, որ աշխատավորության ծանր վիճակի պատճառը ցարն է ու ցարական կարգերը: Հենց այդ տարիներից էլ նա իր կյանքը նվիրեց ցարական ինքնակալության դեմ մղվող բանվոր դասակարգի պայքարին:

1904 թվականին Կիրովը մտնում է սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մեջ և եռանդուն ռևոլյուցիոն աշխատանք է կատարում բանվորների շրջանում:

Կիրովը Լենինի և Ստալինի հավատարիմ զինակիցն էր: Պարտիան միշտ նրան վստահում էր ամենադժվարին, ամենապատասխանատու գործերը: Պարտիայի հանձնարարությամբ Կիրովը ռևոլյուցիոն աշխատանք է՝ տանում Սիբիրում, Հյուսիսային Կովկասում և մեր երկրի այլ վայրերում: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակ Կիրովը խոշոր աշխատանք է կատարել ռևոլյուցիայի հաղթանակի համար: Քաղաքացիական պատերազմի տարիներին նա ղեկավարում էր Աստրախանի հերոսական պաշտպանությունը, մասնակցում Հյուսիսային Կովկասի ազատագրմանը:

Քաղաքացիական պատերազմից հետո Կիրովը ղեկավար պարտիական աշխատանք է կատարում Թբիլիսիում, Բաքվում և Լենինգրադում: Նա անխնա պայքար է մղում մեր Հայրենիքի ներքին թշնամիների՝ տրոցկիստների և զինովևականների դեմ: Այդ էր պատճառը, որ ժողովրդի թշնամիները, ֆաշիստական վարձու լրտեսները, 1934 թվականի դեկտեմբերի 1-ին նենգորեն սպանեցին նրան:

Սովետական ժողովուրդները չեն մոռանա Լենինի—Ստալինի հավատարիմ բարեկամ, բոցաշունչ տրիբուն Կիրովին և իրենց սրտերում վառ կպահեն նրա պայծառ հիշատակը:

## Ն. Ա. ՆԵԿՐԱՍՈՎ



Լրացավ ռուս մեծ բանաստեղծ, հրապարակախոս-դեմոկրատ Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովի ծննդյան 130 տարին:



Նեկրասովն իր մանկությունն անցկացրեց Վոլգայի ափին, Յարոսլավլի մարզի Գրեշնևո գյուղում: Այնտեղ նա մոտիկից ծանոթացավ ճորտ գյուղացիների, բուռլակների հետ, տեսավ նրանց չարքաշ, տառապանքով լի կյանքը, զգաց այն խորը վիշտը, որով համակված էր ռուս աշխատավորությունը ցարական ինքնակալության տիրապետության ժամանակ և դարձավ այդ վշտի երգիչը: «Ովքեր են Ռուսաստանում լավ ապրում», «Երկաթուղին», «Վոլգայի ափին», «Սառնամանիք—կարմիր քիթ» և իր այլ բանաստեղծություններում Նեկրասովը ցույց տվեց, թե որքան ծանր են ապրում աշխատավոր մարդիկ ճորտատիրական գյուղում և կապիտալիստական քաղաքում:

Նեկրասովն իր բողոքի ձայնը բարձրացրեց ընդդեմ ցարական ինքնակալության և աշխատավորությանը պայքարի կոչ արեց: Ահա թե ինչու սովետական ժողովուրդը բարձր է գնահատում Նեկրասովին և երախտագիտությամբ համարում է նրան ռուս խոշորագույն պոետներից մեկը:

## Ա. ՖԱԴԵԵՎ



Չկա մի պիոներ, մի դպրոցական, որ կարդացած չլինի «Երիտասարդ Գվարդիա» վեպը խիզախ Կրասնոդոնցիների մասին:



Այժմ մեր երկրում ապրող գրեթե բոլոր ազգությունների լեզուներով այդ վեպը թարգմանվել է: «Երիտասարդ Գվարդիան» շատ անգամ հրատարակվել է նաև արտասահմանյան զանազան լեզուներով: Բոլորի կողմից սիրված այդ նշանավոր վեպը գրել է սովետական տաղանդավոր գրող Ալեքսանդր Ֆադեևը: Ֆադեևի գրչին են պատկանում նաև «Ջախջախում», «Վերջին Ուդեգեն» վեպերը, որոնք ընթերցողների կողմից սիրված գրքեր են:

Ալեքսանդր Ֆադեևը ոչ միայն նշանավոր գրող է, այլև նշանավոր հասարակական գործիչ: Նա խաղաղության Պաշտպանության Համաշխարհային Խորհրդի նախագահի տեղակալ է, ՍՍՌՄ Սովետական Գրողների Միության գլխավոր քարտուղարը:

Դեկտեմբերի 24-ին լրանում է անվանի գրողի ծննդյան 50 տարին: Սովետական ժողովուրդը սիրով կնշի նրա հոբելյանը:

# ՊԱՏՐԱՍՏԻ՛Ր ՏՈՆԱԾԱՌԻ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ











Վերցրու ամուր ստվարաթուղթ կամ ստվարաթղթից պատրաստված որևէ անպետք արկղ: Ստվարաթղթի երկու երեսին զգուշությամբ և մաքուր սոսնձիր նկարչական մաքուր թուղթ:

Այս էջում ցույց տրված խաղալիքները, նկարում տրված կամ քո ցանկացած չափերով, արտանկարիր ստվարաթղթի վրա: Ապա վերցրու սրածայր մի դանակ և եզրագծերով կտրիր ու հանիր խաղալիքը: Մնում է ջրաներկով կամ գունավոր մատիտներով, նկարում ցույց տրված գույներով, ներկել երկու էջի նկարները: Ապա բզով կամ հաստ ասեղով նկարի վերին մասը ծակիր և խաղալիքը թելով կախիր տոնածառից: Աշխատիր, որ գույները պայծառ լինեն: Ամեն մի խաղալիքից պատրաստիր այնքան, որքան անհրաժեշտ է:





Խաղալիք ինքնաթիռը պատրաստվում է երկու հատվածից: Պոչի «ա» հատվածը կտրվում է նույն եղանակով և ներկվում երկու կողմից, իսկ ինքնաթիռի պոչի վրա գտնվող «բ» գծի տեղում դանակով մի նեղ բաց արա և նրա մեջ հագցրու «ա» հատվածի սպիտակ մասը: Եթե ցանկանաս, աստղերը կարող ես պատրաստել երկու կողմից ուռուցիկ: Այդ դեպքում նկարիր ոչ թե ստվարաթղթի, այլ նկարչական թղթի վրա: Ամեն մի աստղի համար երկու հատ: Կտրելուց հետո դրանք ծալվում են մուգ և բաց գույները անջատող գծերով: Աստղերի երկու կեսը իրենց եզրերով սոսնձվում են միմյանց: Մի մեծ աստղ էլ պատրաստիր, տոնածառի կատարը զարդարելու համար:

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*











# ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ «Պ Ի Ո Ն Ե Ր»

## ՍԻՐԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

«Պիոներ» ամսագիրը կոչված է մեր երկրի պիոներներին ու դպրոցականներին դաստիարակելու կոմունիստական ոգով, հայրենասիրության, Լենինի—Ստալինի մեծ պարտիայի նվիրվածության ոգով։ Ամսագրի նպատակն է մեր մանուկների և պատանիների մեջ սերմանել խիզախություն, ազնվություն, ընկերասիրություն, անձնազոհություն, աշխատասիրություն, կարգապահություն, սեր դեպի ուսումը և գիտելիքները, դեպի պիոներական աշխատանքները, հարգանք ուսուցիչների, պիոներական աշխատողների, ծնողների նկատմամբ և այլն։

Մեր ամսագրում տպագրվում են պատմվածքներ, ակնարկներ, բանաստեղծություններ, ինչպես նաև պիոներների, ուսուցիչների, ջոկատավարների նամակներ ու թղթակցություններ դպրոցների, օղակների, ջոկատների ու դրուժինաների աշխատանքների մասին։

Ձեր թղթակցությունները կարող եք ուղարկել ձեր կյանքում տեղի ունեցող հետաքրքիր դեպքերի, պիոներական աշխատանքի, ինքնագործունեության խմբակների մասին (երգի, պարի, ձեռագործի, նկարչության, մոդելիստների և այլն)։ Գրեցեք պատանի տեխնիկների, բնասերների, տուրիստների, հայրենի երկիրն ուսումնասիրողների, ֆիզկուլտուրնիկների և ձեր դրուժինայի մյուս ակտիվիստների մասին։

Գրեցեք, թե ինչպես է պայքարում ձեր ջոկատը գիտակցական դիսցիպլինան, ուսման որակը բարձրացնելու, ուսուցչին օգնելու համար։

Գրեցեք, թե ինչպես եք անցկացնում ձեր ազատ ժամանակը, ինչ հետաքրքիր հավաքույթներ, էքսկուրսիաներ և զբոսանքներ եք կազմակերպում, ինքնագործունեության ինչպիսի երեկոներ են տեղի ունենում ձեզ մոտ։

Ուղարկեցեք ոտանավորներ, պատմվածքներ, նկարներ, ինչպես նաև խնդիրներ, ռեբուսներ, կրոսվորդներ, հանելուկներ և այլ նյութեր «Հետաքրքիր ժամանց» բաժնի համար։ Նրանցից լավագույնները մենք կտպագրենք ամսագրում։

Գրեցեք, թե ինչպես եք վերակառուցում ձեր աշխատանքները ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումների համաձայն։ Գրեցեք ընկերներով, նույնիսկ օղակով։ Եթե առաջին անգամ եք գրում, լավ կլինի՝ դիմեք ջոկատավարին, ուսուցչին կամ ձեր ծնողներին ձեզ օգնելու համար։

Խմբագրությունն անհրաժեշտ է գտնում, որպեսզի դուք պատասխանեք հետևյալ հարցերին

1. Ձեր անունը, հայրանունը և ազգանունը ..........

2. Տարիքը ..........

3. Հասցեն ..........

4. Աշխատանքի բնույթը (աշակերտ, ուսուցիչ, ջոկատավար և այլն) ..........

..........

..........

5. Ձեր կրթությունը ..........

6. 1951 թվականին «Պիոներ» ամսագրում տպագրված որ գործերը ձեզ հատկապես դուր եկան և ինչու ..........

..........

..........

..........

..........

7. Ի՞նչ չափով է օգնել ամսագիրը ձեր աշխատանքում

8. Ձեզ հետաքրքրող ի՞նչ թեմաներ չեն լուսաբանվել կամ շատ քիչ տեղ են գտել մեր ամսագրում

9. Որքանո՞վ են բավարարում ձեզ ամսագրում զետեղված գրվածքները (գեղարվեստական, գիտական, պիոներ-դպրոցական և այլն)

10. Ամսագրի ո՞ր բաժիններն է անհրաժեշտ լավացնել, լայնացնել կամ ի՞նչ նոր բաժիններ կառաջարկեիք բանալ

11. Բավարարո՞ւմ է ձեզ արդյոք ամսագրի նկարչական ձևավորումը

12. Ուրիշ ի՞նչ ցանկություններ ունեք ամսագրի բովանդակության, ձևավորման կամ աշխատանքի բարելավելու վերաբերյալ

13. Ի՞նչպես է տարածվում ամսագիրը ձեզ մոտ, ի՞նչ չափով եք դուք օգնում ամսագրի տարածման գործին

« ____ » ________ 195 թ.

Ստորագրություն ________

Այս հարցաթերթը ձեր պատասխաններով ուղարկեցեք հետևյալ հասցեով. Երևան, Մարքսի փողոց № 21, «Պիոներ» ամսագրի խմբագրություն։

Պատվեր 713 Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.